


# …ՅՈՑ ԵԿԵՂԵՑԻՆ

ԵՒ

# ԱՄԵՐԻԿԱՑԻ ՔԱՐՈԶԻՉՔ





ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ

Ի ՂԱԼԱԹԻԱ. Ի ՏՊԱՐԱՆԻ

Ց. ՄԻՒՀԷՆՏԻՍԵԱՆ

1860

# ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԻՆ

ԵՒ

# ԱՄԵՐԻԿԱՑԻ ՔԱՐՈԶԻՉՔ

"ԻՆՆՍՈՒՆ ՄԻԼԻՈՆԻ ՄԵԾ ՍՈՒՏԻՆ" ԵՒ "ՄԵԾ ԵՒ ԿԱՐԵՒՈՐ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԵԱՆ" ՎՐԱՅ

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ

ՆՈՐԻՆ ԲԱՐՁՐ ՍՐԲԱԶՆՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԱՏԹԷՈՍԻ

ԱՍՏՈՒԱԾԱՐԵԱԼ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ



ՀՐԱՄԱՆԱՒ ԵՒ ՀԱՃՈՒԹԵԱՄԲ

ԱՄԵՆԱՊԱՏԻՒ ՊԱՏՐԻԱՐՔԻ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍՈՅ

ՏԵԱՌՆ ԳԷՈՐԳԱՅ ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ ԱԶԳԱՅԻՆ ՀՈԳԵՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

Ի ՂԱԼԱԹԻԱ, Ի ՏՊԱՐԱՆԻ Յ. ՄԻՒՀԵՆՏԻՍԵԱՆ

1860

« Սիրելի՛ք՝ մի՛ ամենայն հոգւոյ հաւատայք, այլ
» ընտրեցէ՛ք զհոգիսն եթէ յԱստուածոյ իցեն »:

Ա. ՅՈՎՀ. Դ. 1:

# ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԻՆ

ԵՒ

# ԱՄԵՐԻԿԱՅԻ ՔԱՐՈԶԻՉՔ

" ԻՆՆՍՈՒՆ ՄԻԼԻՈՆԻ ՄԵԾ ՍՈՒՏԻՆ " ԵՒ " ՄԵԾ ԿԱՐԵՒՈՐ ՑԱՅՏԱՐԱՐՈՒԹԵԱՆ " ՎՐԱՅ

*Այն մարդը՝ որ աւելի կ'ընտրէ ամենէն պզտիկ սուտը ըսել, իր ամենէն աղէկ յաճախորդը չկորսնցնելու համար, իր դաւանած կրօնքին անվայել բան կ'ընէ ....:*

ԱՄԵՐԻԿԱՅԻ ՔԱՐՈԶԻՉՔ, ԱՒԵՏԱԲԵՐ:

ՍՏՈՐԱԳՐԵԱԼՍ Լուսաւորչի հարազատ զաւակներէն և Հայաստանեայց ամենուղղափառ Եկեղեցւոյ անձնանուէր անդամներէն մէկն ըլլալով, քանի որ ունեցած հաւատքիս և դաւանութեանս՝ իմ անձնական քննութեամբս, հասկցողութեամբս և համոզմամբս կրելու պարտաւորութիւնս ճանչցեր եմ, Ազգիս և Եկեղեցւոյս դաւանութիւնն և գրութիւններն ամեն ուրիշ ազգի և եկեղեցւոյ դաւանութեանց ու գրութեանց հետ բաղդատելով և հասարակաց փորձաքարին այն է Սուրբ Գրոց անսաերիւր վարդապետութեանցն վրայ փորձելով, համոզուած ու հաստատուած եմ որ, ամեն նկատ-

մունքէ ազատ և ամեն աշխարհային նպատակներէ և դիտմունքներէ զերծ, ճիշդ և միմիայն Քրիստոսէ և անոր Առաքեալներէն աւանդուած ու հաստատուած և մինչև ցայսօր նոյնպէս շարունակուած դրութիւն մի է Հայոց Եկեղեցւոյն դաւանութիւնն: Ժամանակ ժամանակ և խիստ շատ անգամ ինքն ամենէն դատուած ու անարգուած զանազան վատ վարմունքներով և անարգ տիտղոսներով՝ և ինքն ոչ ոք դատած կամ անարգած հետեւելով Տեառն իւրատու. շատերէն շատ վնասներ կրած՝ և ինքն ո՛չ ոք վնասած. շատերն ուզած են ինչ որ իրենն է յափշտակել և իրենց սեպհականել՝ բայց ինք մէկու մի ունեցածին աչք չէ ունեցած. վերջապէս շատերն շատ նպատակներու համար շատ ճիգեր թափած են իր վրայ՝ բայց ինք միմիայն նպատակ ունեցած է երկինքն. մարմնով աղքատ ըլլալուն հոգ չէ ըրած, ուզած է միշտ և միմիայն հոգւոյ հարստութիւն ժառանգել: Եւ որովհետեւ իւրաքանչիւր ազգաց եկեղեցեաց կառավարութիւնն նոյն ազգաց աշխարհային կացութեանն յարմարած և անոր համեմատ կատարուած է միշտ ըստ ժամանակաց բերմանցն, ասոր համար արդարեւ գրեթէ միշտ աշխարհային փարթամութեամբ յղփացած ազգաց եկեղեցեաց կառավարութիւններն ալ զանազան ժամանակ քիչ շատ գայթագղած ու շեղած են նաեւ իրենց հոգւոյն ճամբուն մէջ և մարմնաւոր խորհրդով ագահած են աշխարհակալել նաեւ հոգիներուն վրայ, ճշմարտելով Քրիստոսի՝ մալուխին և մեծատան մէջ ըրած բաղդատութիւնն, որ նոյն է ինչպէս անձի մի նոյն և ազգի մի և եկեղեցւոյ մի համար: Արդարեւ Քրիստոսի այս անդարձ վճռոյն համեմատ մարմնաւորին եւելնալն կամ առաշխարհայինս չափազանց միտումն հոգեւորին պակասութիւն պիտի բերէ միշտ և անպատճառ ե-

թէ չզգուշացուի ։ Ասանկ խոտորմունքներէ, կըսեմ, միշտ և ամեն ժամանակ ազատ մնացած է Հայոց Եկեղեցին ։

Հայաստանեայց ուղղափառ եկեղեցին 'ի սկզբանէ 'ի վեր իր կենացն պատմութեան մէջ գրեթէ չարունակ ամեն ազգէ և ամեն դաւանութենէ եղող քրիստոնէից, այն է Յունաց, Պապականաց և այլոց՝ բազմադիմի յարձակմանցն և իրենց գրաւելու կամ հակառակ Քրիստոսի դրութեանն իրենց անմիջական իշխանութեան կամ կառավարութեան տակ առնելու անհնարին ջանքերնուն առարկայ է եղած ։ Զանազան դէպքերու պատճառաւ իր արդէն բացուած վէրքերուն, փոխանակ անոնցմէ քրիստոնէաբար դարման և օգնութիւն ընդունելու, անոնց իւրաքանչիւրէն նորէ նոր վէրքեր է կրած ։ Բայց և այնպէս ինքն՝ բոլոր քրիստոնէից միութեան ժամանակին, մինչդեռ փոխանակ Քրիստոսի ընդհանուր Եկեղեցւոյ վրայ առանձնաշնորհութեամբ միահեծան տիրապետելու ամբարիշտ խորհուրդն մարդկային միտքն չէր յղացած, այսինքն գրեթէ մինչեւ վեցերորդ դարն եղած, նախնի առաքելական համաշխարհական Եկեղեցւոյն ունեցած սկզբանցն, դաւանութեանն և դրութեանցն վրայ անխախտ և հաւատարիմ կեցած, իր պարտքերուն կատարմանն և իրենիններուն բարեկարգութեանն միայն հոգ է տարած՝ որչափ որ իր աշխարհային կացութիւնն ներած է, իր ամեն անարգուացն ու զրպարտչացն դէմ զարմանալի ու քրիստոնէավայել համբերութեամբ և ներողութեամբ տանելով և ամեն դատաստան տէրոջն և ժամանակին ձգելով. այսպէս կշարունակէ մինչեւ հիմա և այսպէս պիտի ըլլայ իր ընթացքն մինչեւ ամենուն դատաւորն գայ ։

Ամեն դաւանութիւն միշտ ուզած է և կուզէ ուրիշ քրիստոնեայ ազգերն իրեն դաւանակից ընել

և արդէն իրեն դաւանակից գտնուած ուրիշ ազգերն ալ իրեն անմիջական կառավարութեանն տակ առնուլ, բայց Հայոց Եկեղեցին ասանկ չէ, ասանկ խորհուրդ մի բնաւ չէ ունեցած և չունի։ Հայոց Եկեղեցին ալ իրմէ զատ, իրեն դաւանակից ազգեր ունի, բայց իրմէ ըստ ամենայնի անկախ և ազատ, և այդպիսի խորհուրդ մի երբեք չէ մտաբերած անոնց վրայ և երբեք այդպիսի ծիգ մի ցուցուցած։

Այս խօսքերս չըլլայ օտարաց առջին մարդահաճութիւն և շողոքորթութիւն համարուի, զի ասոնք ասանկ ըսելով՝ Ազգս և Եկեղեցիս շողոքորթելու բնաւ պարտաւորութիւն մի չունիմ. և այս տեսակ ամեն նկատմունքէ ազատ ըլլալով՝ եղածին միայն ճշմարտութեամբ պատմող և յայտարար կուզեմ ըլլալ։ Նոյնպէս և կծանուցանեմ որ ես, ինչպէս ըսինք, ո՛չ Յունական եմ, ոչ Պապական և ո՛չ որեւիցէ ծիւղ մի Բողոքական, անոր համար խօսելիքներուս ալ, ոմանց պէս, ոչ մէկուն վեր ելլելն նպատակ ունիմ և ոչ միւսին վար իյնալն. ինծի պէս է նաեւ բոլոր Եկեղեցիս։ Նպատակ ունիմ միմիայն Հայաստանեայց առաքելական Եկեղեցւոյս պաշտպանութիւնն. խօսելիքներուս՝ ո՛րուն նպաստաւոր և ո՛րուն նուաստացուցիչ ըլլալուն մէջ անտարբեր եմ. բայց կըսեմ, ո՛վ նախկին առաքելական դրութեան մէջ է՝ անհոգ թող ըլլայ։ Ինչպէս Եկեղեցեաց կառավարութիւնն նոյն իսկ Քրիստոսի և Առաքելոց ժամանակէն 'ի վեր քննելով կը գտնենք որ միշտ նոյն ազգաց կացութեանն և աշխարհային կառավարութեանցն է հետեւած, ասոր համար ժամանակաց անցնելովն ընդհանրական եկեղեցւոյ ճիւղերուն իրարմէ տարբերութիւններն ու բաժանմունքներն և իրարու հակառակութիւններնին ալ միշտ կառավարութեան պատճառաւ է եղած գրեթէ հինգերորդ դարէն ետեւ մինչեւ ցայսօր, և ժամանակ ժամանակ մասնաւոր ազգային եկեղեցիներուն մէկն

կամ մէկալն ալ իրենց աշխարհային կացութեանն ու զօրութեանն համեմատ միւսներուն վրայ զօրացած։

Այսպէս գրեթէ զանազան անգամ Յունական և Պապական փառասիրութեանց պատճառաւ Հայոց փոքրիկ հօտին ան առջի ամեն կրածներն, զոհերն ու կորուստներն քիչ գալով, ան ամեն եղածներէն ետքն վերջին ժամանակներս ալ Պապին վերջին երկանցն ծնունդներէն Ամերիկացի Բարոզիչներն ելան, փորձ մի ալ անոնք փորձել ուզեցին անոր վրայ, և անոնք ալ առջիններէն քիչ վէրք չբացին ու կը բանան ազգին արդէն վիրաւոր մարմնոյն վրայ. արդէն ունեցած Հայ Հռոմ, Հայ Պապական վէրքերուն վրայ Հայ Բողոքական վէրքն ալ աւելցուցին։ Առջիններէն հազիւ քիչ մը շունչ առած ու խաղաղած հիմա ալ ասոնք կուզեն տիրապետել Հայոց վրայ առջիններէն ոչինչ ընդհատ սկզբամբ ու պահանջմունքներով։ Ով իրենցմէ չէ, իրենց չի հետեւիր, ամեն իրաւունք իրենց չի տար, իրենցպէս չի խորհիր կամ չի խօսիր, վերջապէս առանց քննութեան իրենց ամեն ըսածներնուն չի հաւատար և չ'ընդունիր և իրենց ճամբէն չի գալեր՝ Քրիստոսի փարախէն չէ, հաւատքն՝ դաւանութիւնն և սկզբունքներն ինչ ալ եղած ըլլան։ Ինչ տարբերութիւն կայ. ասոնց այս պայմաններուն և Հռովմայ Պապին գերիշխանութեան և անոր նպատաւոր ուրիշ ապօրինաւոր պահանջմունքներուն մէջ. այս սկզբանց պատճառաւ չէ՞ր մի որ իրենք Պապն մերժած են ու հիմա ելեր նոյնն ուրիշներէն կպահանջեն։

Ի վերին երեսս ուրիշ սուտ ու պատրուակեալ պատճառներ մէջ կբերեն։ Կըսեն թէ մեզի դէմ ունեցած միմիայն առարկութիւննին սա է որ, իրենք միմիայն Աստուածաշունչն կընդունին կանոն հաւատոյ, ու մենք այնպէս չենք ընդունիր. բայց նոյնն կըսէ, կընդունի և կգործէ նաև Հայոց Եկեղե-

ցին ։ Ինքզինքնին Ս. Եփրեմեան կկոչեն, բայց նոյնն կկոչէ նաեւ Հայոց Եկեղեցին ինքզինքն. իրենց նոր այսինքն Պապական անունն թոթուելէն 'ի վեր ձեռք ձգած Աւետարանն՝ Հայոց Եկեղեցին հազարաւոր տարիներէ 'ի վեր ունի իր ձեռքն ։ Եւ այլ ասոնց պէսեր ։ Բայց ասոնք որու կհասկցնես, նպատակնին ասոնք չեն ։

Որչափ ասոնք ալ ասանկ էզ մի բաներ, անուններ ու հնարքներ իրենց գործիք ու դիմակ ըրած ժամանակ մի է շատ միջոցներ և ամեն ջանքեր 'ի գործ դրին. ասոնք ալ ազգերնէս շատերն շահեցան, բայց բարեբաղդաբար շուտով ձեռքէ հանեցին ։ Զի շատերն յարելով ասոնց քիչ շատ հասկըցան թէ ինչ սկզբանց տէր և ինչ նպատակներու ծառայող անձինք ըլլալնին, թէ և խիստ դժուարաւ, և որն որ չհասկցնելու մեծ փոյթ ունին և ամենայն ոգւով կջանան սկզբունքնին չյայտնել, ամեն բան տակաւ ու վարագուրի տակէ կուզեն ցուցնել ու հասկցնել. անոր համար շատերն նորէն թողուցին ու փախան ։ Այլ սա բանով աղէկ հասկցուեցան ասոնք որ իրենց սկզբունքներն նոյն իսկ Եւրոպայի և Ամերիկայի մէջ անգամ ամենէն անընդունելի և ամենէն մերժուած սկզբունքներն են նոյն իսկ Բողոքական անունով ճանչցուած միլիոնաւոր և մեծամեծ ազգերէ հերքուած ու դատապարտուած, իբրեւ օտար՝ այս հաւատքին հիմնադրին և անոր ճըշմարիտ աշակերտաց յայտնութեանցն ու հասկցողութեանցն ։ Անանկ որ այսօր բնտռելու ըլլաս ազդէս արժանաւոր մէկն չես գտներ Մայրաքաղաքիս մէջ որ իր արհեստովն և իր ստակովն ապրելով Ամերիկացի քարոզչաց հետեւողութեան մէջ ըլլայ ։ Հետերնին մնացած կամ գտնուած քանի մի հետեւողներնին ալ միայն քանի մի իրենց պաշտօններնուն և ծառայութեանցն մէջ ամսականով գործածուած

կամ մասնաւոր նպատակներու համար անոնց յարած և հետերնին մնացած կամ որեւիցէ անուղղայ վարքերնուն պատճառաւն զանոնք իրենց ապատանարան ըրած անձինքներէ զատ ուրիշներ չեն, և առ հասարակ ասոնց ամենուն առջին միանգամայն ան առջի վարկումնին կորնցուցած են Ամերիկացիք և ամեն մարդ անոնցմէ զզուանք ու աժգոհութիւն բերած, ամենէն սերտ և մտերիմ հետեւորդնին անգամ անոնցմէ պաղած է՝ Աւետարան պիտի քարոզենք ըսելով հակառակ բնութեան, ազգային սիրոյ և մարդկութեան պահանջած պայմաններուն՝ ամեն ազգի մէջ սրբազան բռնուած ընկերական կապակցութեան և եղբայրական զգացմանց ցուցուցած հակակրութիւններուն և ազգասիրական պաշտելի ոգւոյ դէմ յայտնած վարդապետութիւն ու վարմունքներնուն պատճառաւն ։

Բայց 'ի վերայ այսր ամենայնի Ամերիկացի քարոզիչներն դեռ կշարունակեն մեղմով աշխարհք և աշխրհքով զմեզ խաբել, դուցէ կարծելով որ Հայոց ազգն, Լուսաւորչական Եկեղեցին դեռ զիրենք ճանչցած չըլլալուն և ատ բաներն չգիտնալուն համար է որ կլռէ ու կհանդուրժէ ։ Եկեղեցւոյս մեծագոյն մասին հետ ես ալ մինչև ցայսօր լռիկ հանդիսատես մի եղայ Ամերիկացի քարոզչաց ազգիս մէջ ցուցուցած ան մեծ ջանքերնուն և գործունէութեանցն, որով շարունակ գրքեր, տետրակներ և օրագիրներ կտպեն ու կհրատարակեն և մինչև ցայսօր ծածկուած ճշմարտութիւններ յայտնել կձևացնեն միայն պարզամիտներ և ռամիկներ խաբել ու որսալու համար, որ խաբեցին ալ իսկ, անարգ ստախօսութեամբ Եւրոպան մեզի ուրիշ կերպ և զմեզ Եւրոպայի ուրիշ կերպ հասկցնելու ներկայացնելով, բնաւ մէկ խօսքերնուն, գործքերնուն ու վարմունքնուն մէջ նոյնութիւն, ճշմարտութիւն ու վաւե-

ռականութիւն չցուցնելով և բնաւ հաստատուն սկզբունք և ընթացք մի չպայմանելով. բոլոր յայտանած սկզբունքներուն մէջ մէկն զմէկալն կջրէ. որ նոր, վարդապետութիւն նոր, զի պատրուակ ու սըտութիւն կայ բանին մէջ և այս քիչերուն յայտնի և քիչերէն քննուած ուղիղ նպատակաւ . . . . :

Կրեթէ բոլոր Եւրոպա ու Ամերիկա միացուցած իրենց մեծամեծ ազգերովը, մեծ բաղմամարդութիւն մի կդնեն մեր պարզամտացն առջին ըսելով թէ. « Ես ազգերուն ամենն՝ մարդկային մտքին
» Աստուծոյ խորոցն հասու կարենալ ըլլալուն չափ
» հասուն, մանր, բարակ և խորին քննութիւննե-
» րով խուզարկած և հասկցած և մեր սկզբունքնե-
» րուն վրայ միայն միացած են, և աշխարհիս միաց-
» եալ ուրիշ ազգերն ալ մօտերս պիտի միանան և
» մէկ հօտ մէկ հովիւ պիտի ըլլան Ամերիկացւոց
» հովուութեան տակ. հիմա մեր ջանքն սա է որ Հա-
» յոց ազգն ալ դուրսն չմնայ սանկ երևելի և մեծ
» միաբանութենէ մի. այսօր թիւերնիս իննսուն մի-
» լիոնն կանցնի ամէնքնիս մէկ հիմ մէկ հիմնական
» սկզբունք ունինք. իրարմէ մանանխոյ հատի մի չափ
» անգամ տարբերութիւն և տարաձայնութիւն չու-
» նինք, որ առանց Աստուծոյ մտքին անկարելի է
» ըլլալ. ասոր համար Աստուած ալ օրէ օր կօրհնէ
» կոր մեզի և արդէն աշխարհային այսչափ յաջողու-
» թիւններ և յառաջադիմութիւններ տուած է և
» զձեզ ասորուկ ըրած. հիմա մենք այն մեծ բազմու-
» թեան, իննսուն միլիոն ժողովրդեան, ընտրեալ և լի-
» ակատար երեսփոխաններն ենք, ինչ որ ուզենք
» կրնանք ընել տալ անոնց ձեր աշխարհային կացու-
» թեանն և ամեն տեսակ բարօրութեան մասին.
» մտածեցէք բարինիդ ինքնին ընտրեցէք ևայլն և-
» այլն » :

Եւ դառնալ Եւրոպայի և Ամերիկայի ըսելով որ.

« Հոս մեծ ազգ մի գտանք, Հայոց ազգն, ժամա-
» նակաւ քրիստոնեայ է եղեր հիմա քրիստոնէու-
» թեան հետքն անգամ մնացած չէ իր մէջն բաց 'ի
» անունէն, ո՛չ գիրք ունին ոչ օրէնք և ո՛չ անոնց վրայ
» ամենափոքր բան մի անգամ գիտցող մէկ մի, անանկ
» աղաւաղուած և անանկ փոխուած է այս ազգն ամ-
» բողջ որ անհնար է կարծել հետքերնէն որ ժամանա-
» կաւ անոնք ալ քրիստոնեայ եղած ըլլան, հիմա մենք
» զանոնք քրիստոնեայ կընենք կոր նորէն, կարգեր և
» օրէնքներ կհաստատենք կոր անոնց մէջ: Սուրբ
» Գիրքն որ տեսան զարմացան, սքանչացան, մինչև
» հիմա անոր կայ ըլլալն անգամ չէին գիտեր եղեր,
» անոր պարունակութեանն վրայ ամենևին գաղա-
» փար մի չունին: Այս բաներուն մեր ձեռօքն յայտ-
» նուելուն համար, մեզի իբրև Աստուծմէ ղրկուած
» սուրբեր և հրեշտակներ ինկած երկրպագութիւն
» կընեն կոր, ըսինք անոնց որ Երկրպագութիւնն միայն
» Աստուծոյ կվայլէ. ամեն օր և ամեն վայրկեան նորէ
» 'ի նոր Հայեր հազարաւորներով ու բիւրաւոր-
» ներով կգիմեն կուգան Քրիստոսի փարախն կը-
» մտնեն կոր, Աստուած այս ազգին մեր ձեռքովն
» ողորմեցաւ Տաճկներուն և Հրեայներուն դեռ չո-
» ղորմեցաւ զի անոնցմէ բնաւ մեզ մտիկ ընող չկայ,
» բայց Հայերն շատ աղքատ են, ապրուստ ան-
» գամ չունին, սակայն շատ ղրկեցէք, զանց մի ընէք
» և այլն և այլն »:

Եթէ ասոնք ասանկ չէ՛ն և փոխադարձաբար այսպիսի սուտ բացատրութիւններ տուած ըլլալնին կուրանան և չեն ընդունիր, հապա ԱՄԵՐԻԿԱՑԻՆԵՐՆ ՀԱՅՈՑ ՀԵՏ Ի՞ՆՉ ՈՒՆԻՆ: Եթէ Հայոց ազգին համար Եւրոպայի տուած բացատրութիւններնին, կըսեմ, վերոյիշեալ կերպով չէ, այլ ինչ կրնան ըսել. կարծեմ Պապական են, Պապին լուծէն կազատենք կոր չեն կրնար ըսել, Հեթանոս ո՛չ երբէք. ապա ալ ի՞նչ

կրնան ըսել. եթէ կառավարութեան և արտաքին քանի մի ծէսերու և արարողութեանց մասին քանի մի բարեկարգութեան կարօտ կետեր ցուցնեն, մեծ անարգանք է իրենց որ անանկ բաներ հոգեկորոյս մոլորութեանց կարգ անցուցած մեծ և արդար ազգ մի նախատելու բամբասելու առիթ են ըրեր. որոց մի միայն դարմանն Աստուծոյ Խօսքին գիտութիւնն է, և որուն յառաջացումն՝ լոյս եղած է և է ամենայն եկեղեցեաց և պակասութիւնն՝ նսեմութիւն, և այս՝ ազգիս պատմութեանն ու մինչև հիմա ունեցած վիճակին ծանօթ մէկ մի թերութիւն չի կրնար համարել ազգիս. այլ արդ՝ միթէ Աւետարանն բաւական չէ՞ անոնց առաջնորդելու և մինչև ցայսօր չէ՞ մի առաջնորդած. միթէ Աւետարանն իրենց չա՞փ ալ մի բացատրող և հասկցող կպակսի Հայոց մէջ. միթէ մինչև ցայսօր չե՞ն մի բացատրած ու հասկցած, Հայոց ազգն իրեն հազար ութն հարիւր տարիէ 'ի վեր որոճացած գիրքն երեկուան աշակերտի չա՞փ ալ մի չհասկցաւ. Հայոց ազգն կ'ըսեմ, որ ժամանակաւ այսօրուան ունեցած հաւատքին և ընդհանուր քրիստոնէութեան հաստատութեանն և պայծառութեանն սիւն եղած է, կամ թէ ըսենք առաջին հիմնադիրն ու զարգացուցիչն հանդիսացած է և զայն պաշտպանելու համար միլիոնաւոր արիւններ թափած և մինչև ցայսօր զայն անարատ պահած ըլլալուն քանի քանի բննաւուն միլիոններու վաւերական վկայութիւններն ստացած՝ կարելի բա՞ն է հաւատալ որ այսօր խախտի, մոլորի և քանի մը նորասէր խաբողներու հետևի:

Հայոց ազգն՝ Եւրոպայի և Ամերիկայի արուեստական և գիտական նորութեանցն և լուսաւորութեանցն ըսելիք չունի, բայց կրօնական նորութիւններնին և լուսաւորութիւններնին բնաւ մէկ կերպով մի չի կրնար ընդունիլ. օրինակ ըլլայ իրենց Պա.

ոլին գերիշխանութիւնն․ այնչափ Պապեր.քանի որ մեքենայեցին Աստուծոյ Խօսքին դէմ իրենց այս հնարածոյ վարդապետութիւնն՝ Հայոց ալ ճանչցնելու համար զանազան դարեր ինչ ճիգեր չթափեցին և ինչ միջոցներ 'ի գործ չդրին․ կրցա՞ն մի ճանչցնել։ Հայոց ազգն կհաւատայ որ ճշմարտութիւնն և աւետիքն մէկ անգամ յայտնուեցաւ կատարեալ և անթերի, հետզհետէ ժամանակ ժամանակ և նորէ 'ի նոր յայտնուած և յայտնուելիք ճշմարտութիւններ և աւետիքներ չի գիտեր, չ'ընդունիր և չի հաւատար․ և ամէն դրութիւն ան մէկ յայտնութեան համեմատ կճանչնայ․ պարզ ըսենք, Հայոց ազգն կրօնքի մէջ ամենևին նորութիւն չի ճանչնար, Քրիստոս և առաքեալք ինչ որ սորվեցուցին և աւանդեցին ան գիտէ․ ամենէն պզտիկ մէկ ծէսն անգամ անոնց ժամանակն կամ անոնց խիստ մօտ ժամանակներուն մէջ սահմանադրուած կերպովն կուզէ կատարել։ Արդ ատոնց վարդապետելիքնին եթէ հին է՝ Հայերն արդէն ունին բուն աղբիւրէն առած, իսկ եթէ նոր՝ չեն ընդունիր և ոչ մէկ բան մի, քան որ վարդապետուածն է՝ ըստ իրենց տրուած պատուիրանին, թէ և յերկնից իջած հրեշտակներ ըլլան։ Ապա կեզրացնենք խօսքերնիս և բոլոր աշխարհի դատաստանին առջև կը բողոքենք եթէ պէտք ըլլայ մինչև ամեն լեզուով թէ ԱՄԵՐԻԿԱՑԻՆԵՐՆ ՀԱՅՈՑ ՀԵՏ ԲԱՆ ՉՈՒՆԻՆ ։

Աս Ամերիկացի քարոզիչներն գրեթէ երսուն տարիէ 'ի վեր մինչև հիմա ինչ որ ուզեցին գործեցին, ինչ որ ուզեցին խօսեցան, թէ հոս՝ մեզի Հայերէն և թէ Եւրոպայի և Ամերիկայի մէջ՝ զանազան օտար լեզուներով և ես շատերուն հետ լռութեամբ մտիկ ըրի կամ Եկեղեցւոյս հետ համբերեցի և հոգ չըրի, զի աղէկ համոզուած ենք որ երկնից բանլիքն Ամերիկացւոց ձեռքն ալ չէ, ինչ որ կուզեն ընեն, մինչև որ հոգնին։ Եղան ոմանք որ ժամանակ

ժամանակ ղանազան կերպով դէմ խօսեցան և իբր թէ առոնց կացութիւնն ու գրութիւններն հերքել ուզեցին ալ նէ՝ յաջողելու բաղդն չունեցան և առոնք յամառեցան ընթացքնուն մէջ. ու ես ինչպէս ըսի լոկ հանդիսատես կըլլայի ու մտիկ կընէի. բայց երբոր գիտնալով խօսուած այնպիսի ահագին սուտութիւններնին և ահագին խաբէութիւններնին կառանէի ընթացքնուն մէջ ալ լուռ չէի կրնար կենալ, ատոր համար վերջապէս իմ ալ համբերութիւնս հատնելով, ուզեցի անգամ մին ալ ես լռութիւնս խզել և եղանակաւ մին ալ ես խօսիլ իրենց հետ: Ուստի մէյմէկ առթիւ երկու փոքրիկ յօդուած ալ ես գրեցի ու հրատարակեցի, որ թէ և փոքրիկք՝ բայց շատ մեծ և կծու եկան իրենց, զի այնպիսի ծածուկ էր բռնուած որ մինչև հիմա իրենց սկզբանցն և խաբէութեանցն վրայ ամենայն խնամով ծածկել ջանացած վարագոյրներնին կվերցնէր, բանն կմերկացնէր, առականերնին կյայտնէր ու պատրուակներնին կխայտառակէր:

Մէկն է անոնց հրատարակած հազարումէկ անմտադիր գրութիւններնուն մէջէն, Քրիստոսի տիեզերական եկեղեցւոյն դէմ ունեցած հակառակութիւննին ձգած կարծեցնող Նոեմբերի 109 թուոյն մէջի Ինկլէզէյին հէփ մէյիր[1] խորագրով հրատարակած յօդուածնուն նոյնն օրինակուած, Մեծ և կարևոր յայտարարութիւն մի առ Բողոքական Հայ եղբարս իրենց առաջնորդներէն գրուած[2] վերտառութեամբ՝ նոյն իսկ իրենց յօդուածին մէջ միայն մոռացն համեմատ լոկ քանի մի բացատրիչ բառեր յարած: Երկրորդն է Ամերիկացի քարոզչաց և անոնց արբանեկացն Պապականներէն զատ Եւրոպայի և Ամերիկայի բոլոր ուրիշ մեծամեծ ազգերն մեզի դէմ իրենց նիզակակից և համախոհ և իրենց

[1] Տես Յաւելուած Ա:

[2] Տես Յաւելուած Բ:

օկզըանոսն վրայ միաբան կըլլէյնել ուզելով տարուէ տարի զանազան վերադիրներով բազմամարդութեան մեծամեծ և անհեթեթ թիւեր նշանակելնուն և վերջին անգամ Աւետաբերի 114 թուոյն մէջ յիշած մեծ թիւերնուն դէմ, Իննսուն միլիոնի մեծ սուտին վրայ[1] վերտառութեամբ ։

Առջինն հրատարակեցի Մասիս 370 թուոյն մէջ որուն պատասխանեցին Աւետաբերի 111 թուովն[2] առանց ուղղակի պատասխանի, զանազան հնարածոյ հետևութիւններով իրենց առջի յայտնած և հրատարակած սկզբունքներնուն հակառակ խօսքերով, զոր կարճ կերպով մերժեցինք Մասիս 372 թուոյն մէջ[3] անոնց ակամայ և բռնի չհամոզուելնին և կամակորութեամբ խօսք հասկնալ չուզելնուն համար քաշուելնիք զուր աշխատութիւնն խնայելով և կրուելնիք դժուարութիւններն մտածելով, որուն դարձեալ պատասխանեցին նոյնպէս անուղղակի և իրենց սովորական ոճովն Աւետաբերի 112 թուոյն մէջ[4] եթէ պատասխան կոչուիլ արժան են, և ես լռեցի ։

Երկրորդն հրատարակեցի Մասիս 385 թուոյն մէջ, որուն պատասխանեցին նաև իրենց սովորական կերպովն, որուն պէտք էր պատասխանել բնաւ մէջ չբերելով և յիշատակութիւնն անգամ չընելով և դուրսէն անպատշաճ պարագայներ ու խնդիրներ մէջ բերելով Աւետաբերի 119 թուոյն մէջ[5] անյարիր, իրարու հակառակ և պատ 'ի պատ խօսքերով ։

Աւստի այս անգամ, ան երկու յօդուածներնիս ալ իրարու բացատրութիւն ըլլալնուն, իրար վերաբերելնուն և մէկ նպատակի ծառայելնուն համար, այն է թէ Ամերիկացիներն Հայոց հետ բան չունին, Ամերիկացիներն հերձուածող են, երկուքին համար ալ տուած պա-

[1] Տե՛ս Յաւելուած Բ ։ [2] Տե՛ս Յաւելուած Գ ։ [3] Տե՛ս Յաւելուած Դ ։
[4] Տե՛ս Յաւելուած Ե ։ [5] Տե՛ս Յաւելուած Է ։

տասխաններնուն ընելիքնիս և հերքումնիս հոն մէկիկ համփոփենք ներկայ տետրակիս մէջ կարճ և ամփոփ խօսքերով, որչափ որ կարելի է, առանց ուրիշ մեր նպատակէն դուրս խօսքերնուն վրայ առայժմ բացատրութիւններ տալ և խորհրդածութիւններ ընելու, զորս կխոստանանք ետքէն կատարել։

ՄԵԾ ԵՒ ԿԱՐԵՒՈՐ ՑԱՅՏԱՐԱՐՈՒԹԵԱՆ (Ա․-եփ․ 109 և Մաշ․ 370) միայն համեմատ իրենց բերնէն յարած քանի մի բառերնէս և ետքի կարճ հերքումնէս (Մաշ․ 372) նպատակնիս և դիտաւորութիւննիս մակաբերելով և միտքերնիս ու ընելիքնիս մարգարէանալով՝ երկար խօսքերով ու դուրսէն պարագայներ ու պատմութիւններ մէջ բերելով պատասխանեցին (Ա․-եփ․ 111․ 112)։ Բայց խնդիրն յայտարարութիւնն է, բացատրութիւննին, հետեւութիւնն և փոխադարձ ընելիքներնիս ետքէն կուգան, առայժմ պէտք եղածներն սա խնդիրներն են․ Անգղիացին Հեփ․ Դոշէ՛ր բնագիրնին (Ա․-եփ․ 109) իր ամեն մէկ բառերովն դեռ իրենց ընդունելի՞ է մի․ առյօդուածն հրատարակելնուն վրայ չէ՞ն մի զղջացած․ անոր յաւելուածով օրինակն ալ (Մաշ․ 370) նոյնպէս ընդունելի՞ է մի․ եթէ բնագիրն ընդունելի է՝ յաւելուածով օրինակն ինչո՞ւ չէ․ բնագրէն տարբեր միտք մի կյայտնէ՞ մի․ ի՞նչ է․ ո՞ր բառն հակառակ է բնագրին միայն և այլն։ Այս յիշուած երկու յօդուածներնին (Ա․-եփ․ 111․ 112) քննելով բոլոր պարունակութեան միայն համեմատ երկու մաս կբաժնենք․ նախ Անգղիացին Հեփ․ Դոշէ՛ր բնագիրնուն բացատրութիւնն․ և երկրորդ, բնագիրնուն միայն համեմատ մեր ըրած յաւելուածներուն մեծ մասին ընդունելութիւնն։

Առաջին մասին վրայ առայժմ բան մի չենք ըսեր․ նոյն բացատրութիւնն որ բնագիրնուն տուեր են՝ կրնան տալ նաև յաւելուածով օրինակին․ թող բնա-

գիրն (Ա.-Եփ. 109) յաւելուածով օրինակն (Ոաւխ. 370) և իրենց բացատրութիւնն (Ա.-Եփ. 111 · 112) քովէ քով բերեն և այնպէս աղէկ կարդան ։ Տուած բացատրութիւններնին մեր յաւելուածներուն հերքում չհամարելէ զատ, ընդ հակառակն ապացոյց և հաստատութիւն մի կհամարինք, մեր այն բացատրութեանց մէկ բառն անգամ բնագիրնուն մնացն հակառակ չըլլալուն և իմաստն ալ փոխուած կամ այլայլած չըլլալուն . անանկ չէ՞ մի . Թող ուշիմ և ողջամիտ ընթերցողք դատեն ։

Երկրորդ տեղին մէջ մեր՝ բնագիրնուն մնացն համաձայն յաւելուածներէն վերջին մեծագոյն մասն մեկնաբանելով ընդունած են և երկու անգամ ալ օրինակած, առաւել բաներնուն եկած ըլլալուն համար (Ա.-Եփ. 111 · 112), որով և անշուշտ նոյնպէս անոր յարած հետևութիւններնիս ալ ընդունած են, որ է . « Այլ և այլ անուններով և իրենց յատուկ » զանազան ազգային ծէսերով, աւանդութիւննե» րով և պաշտամանց կերպերով զատուած ու բաժ» նուած ազգերէ եղող մէկ մի կրնայ նաև անգամ » մի եղած ըլլալ Յիսուսի Քրիստոսի միմիայն ճշմա» րիտ եկեղեցւոյն ։ Ուստի այս Ընդհանուր եկեղեց» ւոյն մէկ ճիւղն եղող ազգային սեփհական եկե» ղեցւոյ մի առաջնորդութիւնն ձգելով ուրիշ օ» տարազգի եկեղեցւոյ մի առաջնորդութեան դի» մելու հարկաւորութիւն չկայ, յանիրաւի իր եկե» ղեցին և ազգն ամբողջ անարգելու ծանր յանցանքին » և աններելի մեղքին տակ իյնալով, ազգատեցու» թեան վատ անունն կրելով և այսպիսի վարմուն» քով մի ազգին զգալի չարիքներ հասցունելով ։ Ինչ» պէս տիեզերական ճշմարիտ եկեղեցւոյ անդամու» թեան՝ նոյն և փրկութեան հասնելու միջոցն միայն » այս կամ այն ազգին անուանն տակ, այս կամ այն » առաջնորդին կառավարութեանն տակ կամ ձեռքն

» չի կրնար ըլլալ, ամէն մարդ գտնուած ազգին ան-
» ուանն և առաջնորդութեան տակ կրնայ Ճշմարիտ
» եկեղեցւոյ անդամ մի եղած ըլլալ, իր ազգին եկե-
» ղեցին անոր մէկ մասնաւոր ճիւղն գտնուելովն,
» այսինքն բաւական է որ իր ազգին եկեղեցին էա-
» կան հաւատալեաց մէջ Ճշմարիտ և Ընդհանրական
» Եկեղեցւոյ հետ մէկ ըլլայ և անոր դաւանութիւնն
» ու վարդապետութիւնն ունենայ (Մաքս 370)»:

Աս և ասոր նախորդ կտորն մեր յաւելուածէն ընդունած մասերնին է, զոր Աւետաբերի մէջ երկու անգամ օրինակեցին ու բացատրեցին ալ, բնագիրնուն միայն ըստ ամենայնի համեմատ և հարազատ գտնելնուն համար: Ասոնցմէ դուրս քանի մի բաներ միայն կմնան յաւելուածէն, զոր եթէ ուշի ուշով քննեն նոյնպէս համեմատ պիտի գտնեն: Աս ընդունած կտորներնէն զատ յաւելուածէն և ոչ ուրիշ բառ մի մէջ բերած են ապացուցանելով որ բնագիրնուն մտացն հակառակ ըլլայ, աւստի կխնդրենք հոս ընթերցողներէն կշռել մեզի համար ան խօսքերնին թէ, «Իր կողմէն իր նպատակին յարմար յաւելուած-
» ներ ընելով, բոլորովին շփոթեր և այլայլեր է ան
» յօդուածին իմաստը»: Ամենևին չենք ընդունիր որ իմաստն շփոթած կամ այլայլած ըլլանք, կամ իմաստին հակառակ և ոչ բառ մի յարած ըլլանք. իսկ իրենք որովհետև այդպէս կըսեն, աւստի ո՞ր բառն որ իրենց բնագրին մտացն համաձայն չէ՝ պէտք է խոհեմութեամբ և զգուշութեամբ յայտնեն, որ բացատրութիւնն մերժել ուզելով բնագիրն ալ մերժած չըլլան. ապա թէ ոչ կխնդրենք յաւելուածով օրինակն ընդունին ինչպէս իրենց բուն բնագիրն ընդունելու պարտաւոր են, զի մենք իրենց բնագրէն ամենափոքր բառ մի անգամ պակսեցուցած չըլլալէ զատ խօսքին և իմաստին ալ բուն կարգն պահած ենք, բնաւ տեղափոխութիւն ալ ըրած չենք և աւել-

ցուցած բառերնիս ալ նոր իմաստ մի չեւելցնելու մեծ խնամ տարած ենք . ուստի եթէ նոյն յօդուածէն իրենց այսօրուան սկզբանցն հակառակ իմաստ մի կելլէ կոր նէ, ուրիշ տեղէ թող չքնտռեն, իրենց երեկուան յօդուածէն է . զի որ մէկ այս օրուան ըսածնին փաղուան մէկալին հակառակ չելլէր, որ աս չելլէ ։ Ուստի այսպէս ըստ հարկին ընդունելնէն ետև կխնդրենք անգամ մ'ալ Աւետաբերի մէջ ամբողջ հրատարակեն, առանց դուրսէն ուրիշ պարագայ, պատմութիւն, բացատրութիւն և առարկութիւն մէջ բերելու և ապա իրենց հետ ուրիշ պարագայներու և բացատրութիւններու քննութեանն կմըտնենք ։

Վերոյիշեալ այն երկու պատասխաններնուն մէջ ուրիշ ըսածներնուն առայժմ միայն աս կըսենք որ Հայոց Եկեղեցին ոչ երբեք Անգղիացւոց, Տանիմարքացւոց, Շուէտաց և այլոց սովորաբար բողոքական անուամբ ճանչցուած ազգաց եկեղեցեացն դէմ նզովք կամ բանադրանք կարդացած ունի և ոչ ուրիշ եկեղեցւոյ մի դէմ . այլ միայն վճռեալ հերետիկոսաց, ուրացողաց և հերձուածողաց դէմ, և իրմէ ելած գիտութեամբ կամ անգիտութեամբ, հերձուածող, բռնեկող, գայթագղեցնող, անարգող, վրդովիչ, անհնազանդ, խեռ և ամենայն չարեաց պատճառ հայ մոլորելոց դէմ, որ իրենց չար և մոլար վարմունքովն Եկեղեցւոյ բարեկարգութիւնն կխանգարեն և խաղաղութիւնն կվրդովեն, ատելութեան և զզուելի չարեաց պատճառ կըլլան . որպիսեաց համար որ, կըսեմ, բուն իսկ 'ի Քրիստոսէ և Առաքելոց պատուէր ունի ըրածներէն աւելիներն ընել . այն է, խրատել, սաստել, յանդիմանել . եթէ զգաստանան՝ դարձեալ սիրել ու մխիթարել . իսկ եթէ յամառին և իրենց անկարգ ընթացքնուն մէջ շարունակեն և իրեն աջ աչքն և աջ ձեռքն ալ ըլլան՝ իրմէ

կարել, ձգել և իբրև զհեթանոս ու մաքսաւոր համարիլ և ինքզինքն անանկներէ զգուշանալ և այլն։

Ասոր համար, կըսենք իրենց, որ ոչ Առաքել վարդապետն կրնայ դադրիլ այնպիսիներն նզովելէ և ոչ Խրիմեան Մկրտիչ վարդապետն, «Թող Աստուած ջնջէ, սատակէ ու խորտակէ այնպիսիներն՝ որոնք յայտնուած են իբրև սատանայական սերունդ մը» գոչելէ (Ա.-Խ. 111.) և ոչ ուրիշներն ուրիշ միջոցներէ, մինչև որ անոնք զգաստանան և Եկեղեցին խաղաղի և Ամերիկացի քարոզիչներն ալ չարեաց պատճառ ըլլալէ դադրին։ Այս սկզբանց համոզուած ըլլալու յոյս ցուցնելով, «Դեռ սպասելու ենք և այլն» կըսեն Ամերիկացիք. բայց կըծանուցանենք իրենց որ պարապ տեղն չսպասեն, եթէ յիրաւի նաւերնին պատրաստ է և Եկեղեցւոյ խաղաղութեանն ու բարեկարգութեանն, և ճշմարտութեան ու ստութեան կամ ուղղութեան ու մոլորութեան մէջ եղած տարբերութիւններն հրապարակելու և հաստատելու համար Հայոց գործածած միջոցներուն դադարմանն կսպասեն. կընան մեկնիլ կըսենք, եթէ Հայոց՝ դուրսէն քարոզիչ պէտք չըլլալուն վրայ իրօք համոզուեցան և կրկնք միայն վերի կէտերուն դադարմանն կսպասեն. կըսենք իրենց որ այս եղած է բոլոր ճշմարիտ և առաքելական Եկեղեցւոյ վարմունքն յատուկ պատուէրներով և այս պիտի ըլլայ մինչև աշխարհիս վերջն։ Իր անզգամացն, անհնազանդից և մոլորելոցն ուղղութիւնն՝ ամեն ազգային Եկեղեցւոյ իր ձեռքն ըլլալն կարծեմ գիտնալու են Ամերիկացի քարոզիչներն . . . . . .

Ամերիկացի քարոզիչներն բան մի կարդացած, գրած ու հասկցած ժամանակնին՝ պէտք է զանազանեն աշխարհիս՝ Պապէն զատուած և ընդհանրապէս Բողոքական անուանով ճանչցուած ուրիշ շատ մի վեհանձն ազգերն և սովորաբար այս անուանով յայտ-

նուած ու յիշուած կամ լաւ եւս անով պատրուակուած՝ Հայերէն բաժնուած ու Ամերիկացի քարոզչաց եռանդէն մոլորածներն, որ միամտաբար գործիք են եղած անոնց խաղուն. պէտք է, կըսեմ, Ամերիկացի քարոզիչներ, Մեթոտիստի խմբագիրներ կամ Հայ Բողոքականներ ըսելով՝ աշխարհիս Անգղիացի, Ղուէտացի, Տանիմարգացի և այլ ազգերն ալ մէկտեղ չիմանան, կամ ան և ուրիշ ազգերէն մէկուն կամ շատերուն անունն տրուած ժամանակն՝ ինքզինքնին ալ անոնց մէջ, այսինքն, Ամերիկացի քարոզիչներ, Մեթոտիստի խմբագիրներ կամ Հայ Բողոքականներ չիմանան, և իրենց հետ ան ազգերն ալ չարեաց պատճառ չըամբաստեն, քանի որ բնաւ մէկ կերպով մի իրենց մասնակից չեն և Հայոց նկատմամբ իրենց առ վարմունքէն մեծապէս դժգոհ: Հայոց Եկեղեցին առ ազգերուն իրենցմէ չըլլալն և մէջերնին ունեցած տարբերութիւններնին բաւական գիտէ և շատ աղէկ գիտցողներ ալ ունի և եթէ պէտք ըլլայ իրենց ալ ըստ ամենայնի կրնայ բացատրել ու սորվեցնել, եթէ չեն գիտեր, կամ եթէ գիտեն ու չեն ուզեր կամ բաներնուն չի գար ու բերաննին յառաջ չերթար իրենք իրենց բերնովն յայտնել ու խոստովանիլ: Հայոց Եկեղեցին էական հաւատալիքներէ զատ ուրիշ պատճառներու համար զուրիշն չի դատեր իրենն միայն կը դատէ. Հայոց Եկեղեցին գիտէ որ ամեն Եկեղեցի իրն միայն պիտի դատէ, ամեն Եկեղեցւոյ իրեններուն հաշիւն միայն իրմէ պիտի հարցուի, միայն թէ դուրսէն իրեններուն ալ խառնուող կամ զինքն դատող չըլլայ ըստ հաճոյից:

Հայոց Եկեղեցին՝ եկեղեցւոյ մի ճշմարտութիւնն՝ անունի, կառավարութեան, հետևողութեան և ուրիշ բնաւ օտար հնազանդութեան մի վրայ հիմնած չըլլալով, սա գիտէ որ իւրաքանչիւր ազգի եկեղեցի զատ կառավարուելու է. այս գիտէ, այս համո-

զումն և այս սկզբունքս ունի որ Ընդհանրական Եկեղեցին ժամանակ մի հաւատոյ մասանց և արտաքին զանազան խնդիրներու ու մեկնութիւններու պատճառաւ շատ մի կռիւներու, վէճերու և երկպառակութիւններու ենթակայ ըլլալէ ետև, զանազան ազգերէ և եպիսկոպոսներէ բաղկացեալ եկեղեցական Գօնկրէս[1] մի ըրին, ընդունիլն՝ փրկութեան, մերժելն՝ կորստեան միջոց եղած ամեն էական պայմանները բաղկացած դաշնադրութիւն մի ստորագրեցին և իրարու դաշնակից եղան, միացան Անգլիական դաշանք, իրարմէ անկախ և իրարու հաւասար, բնաւ իրարմէ անդամ և ուրիշ իրաւունք մի չյափշտակելու և չպահանջելու և իրարու վրայ բնաւ որևիցէ ազդեցութիւն մի բանեցնելու արտօնութիւն չունենալու պայմանաւ և ամեն ազգ իր ազգին սեփհական եկեղեցւոյն կառավարութեանն տակ գըտնուելու պայմանաւ։ Եւ անկէ ետև եղած անոր համեմատ Գօնկրէսներն ալ զանոնք հաստատելով և հետզհետէ եկող ազգերուն և մասնաւոր եկեղեցիներուն ալ այն դաշինքն ստորագրել և ընդունել տալով, այս դաշինքս ճանչցող և ընդունող մի դաշնակից է և անդամ կըլլայ ու կճանչցուի Ընդհանուր Եկեղեցւոյ, չընդունող կամ ուրող մի հերետիկոս կհրատարակուի։ Ասոր համար Ամերիկացի քարոզչաց ըսածին պէս՝ Նեստորականք, Արիոսեանք,

[1] Աշխարհիս քաղաքական խաղաղութեանն և ազգաց իրաւանց հաւասարութեանն և անդորրութեանն համար քաղաքական պատերազմներէ ետև եղած ժողովներու պէս և ստորագրուած դաշնադրութեանց պէս՝ հոգևորին ալ առանձին ժողովներ ու դաշնադրութիւններ եղած են, բայց սա երկու տեսակ ժողովներուն և անոնց վերաբերեալ գրութեանց և արտադրեալներուն տարբերութիւններ կան ալ նէ, որովհետև խնդիրն Եկեղեցւոյ՝ սա աշխարհիս վրայ մասնաւոր և տեսանելի կերպով կառավարութեանն վրայ է, անոր համար միակերպ ամփոփաբար աշխարհային արքայաժողովներու վերաբերեալ բառերն գործածեցինք։

Յակոբիկեանք, այս դաշինքն չճանչցող Բողոքականք և այլք և ոչ որևիցէ ժողովուրդ մի կամ անհատ մի՝ որ այս դաշնադրութենէն դուրս այսինքն բանադրեալ աղանդաւորներ են՝ Ընդհանուր Եկեղեցիէն չեն կրնար ըլլալ կամ համարուիլ. իրե՞նք որ կողմէն են, ընդունողներէ՞ն թէ չընդունողներէն. Անգղիական եկեղեցին և ուրիշ եպիսկոպոսական եկեղեցիներն ալ՝ Հայոց, Յունաց և Պապականաց հասկցած միտքովն աս դաշնադրութիւնն կընդունի՞ն մի. իրենք ալ որ Անգղիական և ուրիշ եպիսկոպոսական եկեղեցիներուն հետ մէկ ենք կըսեն՝ նոյն միտքով կընդունի՞ն մի։

Մէկուն ընդհանուր և ճշմարիտ եկեղեցւոյ հետ միաբանութեան կամ մոլորութեան մէջ գտնուած ըլլալն որոշելու միմիայն կէտն ու կշիռն կամ փորձն աս է. ազգային մասնաւոր եկեղեցեաց ուղղափառութեան և առաքելական ընդհանուր Եկեղեցւոյ հետ միանալու կապն աս է. և ազգի մի կամ եկեղեցւոյ մի սոսկ միայն հերետիկոս և աւետարանի ճամբէն ելած կրնայ ըսուիլ. ասոնցմէ դուրս պատճառներու, պահանջմունքներու և պայմաններու համար ազգի մի եկեղեցւոյն մոլորեալ ըսելն անիրաւութիւն է, և ով կըսէ՝ ինք կդատապարտուի, զի հոգևորն մարմնաւորով չի դատուիր. այսպէս անիրաւ է Պապին իր իշխանութիւնն չճանչցող ազգերն մոլորեալ կոչելն։ Աս պատճառներուս համար Ամերիկացիք տեսանելի եկեղեցին խիստ ընդարձակ կառնուն՝ ամեն Քրիստոնեայ եմ ըսողներն մէկտեղ առնելով՝ իրենց քմացն համաձայն, որ այնպէս չէ, վասըն զի ան՝ որ աս դաշինքէն չէ Քրիստոնեայ և Եկեղեցի անուններն անոնց տալ անգամ արժան չէ, թէ և անոնք ինքզինքնին ան անուններով կոչեն. բայց Ամերիկացիք ինչու այսպէս կըսեն և այսպէս կհաստատեն. վասն զի վերի յիշած պայմաններնէս իրենք

ալ բան մի չէ՛ն ընդունիր․ իրե՛նք ալ ետքի յիշածներնուս կարգէն են ։

Նա՛ և համոզուած է Հայոց Եկեղեցին որ այս դաշնադրութենէն եղող ամեն դաշնակից եկեղեցիներուն ներքին կազմութիւններն ու կառավարութիւններն իրենց ձեռքն է․ անոնցմով իրարմէ կրնան տարբերիլ, բայց էական կէտերու վրայ բնաւ տարբերելու չեն ։ Ամեն փոքր բաներու կողմանէ, կամ նաև Սուրբ Գրոց մէջ աւանդուած կամ Նիկիական Դաւանքէ վաւերացած ընդհանուր կանոնաց և էական պայմանաց կիրառութեան և գործադրութեան մասնաւոր կերպերուն և եղանակներուն կողմանէ, և եկեղեցւոյ բարեկարգութեան ու բարոյական սահմանադրութիւններուն ու կանոններուն կողմանէ, ամեն ազգի մասնաւոր եկեղեցիներ ազատ են այնպիսի կարգադրութիւններ ընդունիլ և ընել, և այնպիսի ծէսեր և արարողութիւններ հաստատել և անօրինել, որ իրենց և ժամանակին յարմարագոյն կու գայ, և նոյն ազգի և ժողովրդոց ախորժակին ու սովորութեանցն կպատշաճի․ բայց միշտ պէտք է նայուի որ նախկին ընդհանրական Եկեղեցւոյ սկզբանցն համեմատ ըլլայ որչափ որ կարելի է ։ Աւստի անոնցմէ մէկուն կամ մէկալին դէմ եկող կամ անոնցմէ մէկ փոքրն անգամ աւրող կամ կոտրող անհատներուն կամ անդամներուն ուղղութիւնն ալ՝ ամեն եկեղեցւոյ իր ձեռքն է, և եկեղեցւոյ խաղաղութիւնն ու բարեկարգութիւնն պահելու համար իբրև մեծ բաներու դէմ եկող կամ կոտրողներ կդատապարտէ ու կպատժէ․ այսպիսիններու տարբերութեան համար եկեղեցիներուն մէկն զմէկալն հերետիկոս, հերձուածող ու մոլորեալ չի կրնար կոչել ։ Ուրիշ այս սկզբանց չի՞ պատասխաներ մի նաև Եկեղեցիին հետ Գոյէր խորագրով հրատարակած ՄԵԾ ԵՒ ԿԱՐԵՒՈՐ ՑԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԻՆ․ այս սկզբանց համա-

ձայն չե՞ն մի նաև անոր վրայ ըրած մեր յաւելուածոց բացատրիչ բառերն ։ Նո՞ր ինչ կըսեն ։

ԻՆՆՍՈՒՆ ՄԻԼԻՈՆԻ ՄԵԾ ՍՈՒՏԵՐՆՈՒՆ ըրած բացատրութիւննուս (Մաս. 385) դէմ տուած պատասխաննուն մէջ, եթէ այսպէս արժան է կոչել, (Նէփ. 119) միայն քանի մի կէտի վրայ իրարու հակառակ խօսքերով իբր թէ պատասխանելով, ուրիշ աւելի պէտք եղած կէտերու վրայ կամ յօդուածնուս բուն նպատակին վրայ բնաւ յիշատակութիւն չեն ըրած, որոնց որ պատասխան կրնայ համարուիլ դարձեալ նոյն իսկ Թիւ 385 Մասիսի մէջ յօդուածնիս, զոր ուշադրութեամբ նորէն կարդալու կհրաւիրեմք. մենք հոս նշանակած կէտերնուն քննութիւնն միայն պիտի ընենք ։

Յօդուածնուն սկիզբն շնորհք կընեն զմեզ ստախօս չկոչելով՝ տգէտ և սխալած միայն կոչել, որուն շնորհակալ ենք որովհետև մարդ. բայց այն ալ այն ժամանակն միայն կընդունինք երբ սխալնիս ապացուցուի, զի առայժմ ապացուցեալ սխալ մի չտեսանք ։ Մենք իրենց առայժմ որոշ անուն մի չենք տար, մինչև զիրենք աղէկ մի հասկնանք և հասկցնենք, առայժմ գործքերնուն միայն պատմող կըլլանք և անուննին ինքնին կծագի. կամ որովհետև այդ բանին մէջ այդչափ ճարտարութիւն, դատողութիւն, ճշդութիւն և յաջողակութիւն ցոյց կուտան, կըխնդրենք իրենց ալ պատշաճ անուն մի ընտրեն ներկայ յօդուածս կարդալնէն ետև ։ Նախի առթիւ սորվեցանք որ ատոնք մարդու միտք և նպատակ մակաբերել, հասկնալու և ըսելիք մարգարէանալու շնորհքն ունին, ասոր համար կկարծենք որ մեզի աս անուններն տալերնին ալ ատկից ետքն խօսելիքներնուս համար եղած ըլլայ, զի ինչպէս պիտի ցուցնենք՝ արդէն խօսածներնուս մէջ սխալած կամ չզխացած ըլլալու բան մի չունինք ։

Այս յօդուածնին՝ իրենց քննութեան առած նիւթերնուն համեմատ չորս մասի կբաժնենք և մեր անոնց վրայ ընելիք քննութիւններն ալ այնպէս կկարգադրենք որ ատոնք են իրենց կարգաւն ։

Առաջին մասին մէջ սխալում կդնեն մեզի, Անգ- « ղիոյ, Ռուսիոյ, Շուէտի, Հոլանտայի, Տա- » նիմարգայի և այլ եզ մի արևմտեան ազգաց ե- » պիսկոպոսական Եկեղեցիներն, այնչափ հեռու են » Ամերիկացիներէն, որչափ որ Արևելքի Հայերն և » Յոյներն » խօսքերնիս, սուտ ապացուցանել ու- զելով որ Ռուսիոյ և Հոլանտայի դեսպանատանց մատուռներուն մէջ պաշտօն կկատարեն եղեր, և անոնց հետ քրիստոնէական հաղորդութիւն ունին եղեր. բայց մեր խօսքն յիշեալ տէրութեանց դես- պաններուն կրօնքին համար չէր. և տակա ապա- ցոյց մի և հաստատութիւն մի համարել կուզեն սուտութիւննուն՝ թէ ատանկ ալ միւս ամեն ազգերուն հետ հաղորդակցութիւն ունին և ամենքնին մէկ են, բնաւ տարբերութիւն չունին, բոլոր ան և ուրիշ ամ- բողջ ազգերուն մէկտեղ. բայց մեր յիշած այն հինգ ազգաց երկուքէն զատ՝ իրեք ազգաց և ուրիշ իրենց- մէ չեղած բաժանմունքներնուն անուններն բնաւ մէջ չեն բերեր. բայց զէն չունի մենք անհամբե- րութեամբ կհարցունենք իրենց. Անգղիոյ, Շուէ- տի, Տանիմարքայի և այլ ազգաց դեսպանատանց մա- մատուռներուն մէջ ալ՝ այդպիսի պաշտօն մի կկա- տարե՞ն մի, անոնց հետ ալ հաղորդութիւն ունի՞ն մի, և այն ոչ քրիստոնէական անունով և համակրու- թեամբ միայն, Ռուսիացւոց և Հոլանտացւոց հետ ունեցածնուն պէս, զի աշխարհիս բոլոր Քրիստոն- եայ անունն կրող ազգերն՝ իրարու հետ ատ հաղոր- դութիւնն կրնան ունենալ զոր չունին Հրէից և Հեթանոսաց և այլոց հետ։ Մի Հայոց եկեղեցիէն հաղորդութիւն առած և Հայոց քահանայներէ,

Հայոց արարողութեամբ ; Հայոց Եկեղեցւոյն բակն թաղուած Անգղիացի որ ցուցնելու ըլլամ իրենց, ինչ պիտի ըսեն, որ ընդհակառակն իրենք ուրիշ դաւանութեան ննջեցեալ թաղել չտալու կամ ուրիշ հաղորդութիւններ չընել և ընել չտալու համար մեծ փոյթ ունին ու մեծամեծ կռիւներ կընեն ։ Բանին էութիւնն սա է որ ատ երկու ազգերուն, Բրուսիոյ և Հոլանտայի, թէ և մեծ մասն եպիսկոպոսական է, բայց տէրութեան կամ պաշտօնական եկեղեցին եպիսկոպոսական չէ ։ Ըսենք թէ իրենց ըսածին պէս ըլլայ և Ամերիկացիք ալ անոնց հետ հաղորդութիւն ունենան, ասկից կհետևի՞ մի որ բոլոր ուրիշ Պապէն չեղող Անգղիացի, Շուէտցի, Տանիմարգացի և այլ ազգերն ալ անոնց պէս ըլլան ։ Տես իրենց վնասակար կամ քիչ մի թիւերնին պակսեցնող պզտիկ կտորի մի մէջ որչափ բարակ խուզարկութիւն կընեն, որչափ նախանձախնդիր են, որչափ ճշդութիւն պահել կուզեն. ուրեմն մէջերնին քանի մի իրենց համախոհ գտնուող մեծամեծ և միլիոնաւոր ազգերն՝ ինչպէս ամբողջաբար իրենց համահաւատ և համադաւան կկոչեն և իրենց հետ մէկ կքարոզեն և ինքզինքնին միլիոններու կբարձրացնեն. ուստի դարձեալ կըսենք ու կպնդենք որ բնաւ մէկ բանի մի մէջ համաձայն չեն անոնց որչափ որ Հայերուն հետ չեն, և հետևապէս [illegible] [illegible] ենթադրութիւննին ալ սուտ ։

Երկրորդ [illegible] մէջ սխալում կդնեն մեզի, "Այս » Ամերիկացիք բան մի չեն ճանչնար, ամեն բան կտապալեն, եկեղեցի և եկեղեցական կառավարութիւն » չեն ընդունիր ընդդէմ գրեթէ ընդհանուր բոլոր քրիստոնէութեան. իսկ ընդհակառակն Անգղիոյ և ուրիշ մեծամեծ արևմտեան ազգաց եկեղեցիներն կըսեն թէ, ուր է Եկեղեցին առաքելոց յա- » ջորդներէ այսինքն առաքելականներէն յաջորդաբար ձեռնադրու-

» Ընտամբ իջած եպիսկոպոսներէ, քահանաներէ ու սարկաւագ-
» ներէ կառավարուի. Եկեղեցական աստիճանութիւններն կյոր-
» գէն, որպորդութիւններ ունին, եօթն խորհուրդ եկեղեցւոյ
» կ՚ճանչնան և այլն » խօսքերնիս։ Եւ ասոր սկիզբի
ուրիշ կտորներուն վրայ լռելով կամ աւուել ճիշդ
ըսենք, ըսելիք չունենալով՝ և իբր. թէ վերջին կտորն
այն է, Անգղիական Եկեղեցւոյ եօթն խորհրդոց վրայ
ունեցած վարդապետութիւնն՝ ընդհանուր Եկեղե-
ցիէն որով և Հայոց եկեղեցիէն տարբեր գտնելով,
և զայն՝ ամեն բաժիններնիս մէկէն ջրելու բաւական
համարելով, միայն խորհուրդի կտորն ձեռք կառ-
նուն և ցուցնել կամ պատրուակել ուզելով թէ,
Անգղիական և այլ եպիսկոպոսական Եկեղեցիներն
ալ իրենց պէս եօթն խորհուրդ եկեղեցւոյ չեն ըն-
դունիր, Անգղիական եկեղեցւոյ 39 յօդուածէ բաղ-
կացեալ Ակօնէյ յօդուածներուն 25 երորդ յօդուածն
մէջ կբերեն, սկիզբէն և վերջէն իրենց բանին չեկած
և մեր բաժին նպաստաւոր կտորներն դուրս ձգե-
լով։ Մենք հոս յիշեալ յօդուածն ամբողջ կը դնենք
որ է։

« Ի Քրիստոսէ սահմանուած և հրամայուած
» խորհուրդներն քրիստոնէից դաւանութեանն լոկ
» արտաքին նշանակներ և յիշատակներ չեն, այլ Ա-
» տուծոյ առ մեզ շնորհացն և բարերարութեանցն
» ճշմարիտ և իսկական յարացոյցներ և ներգործական
» կնիքներ, որոնցմով որ Աստուած անտեսանելաբար
» մեր մէջն կգործէ և ասով չէ թէ միայն առ ինքն
» ունեցած հաւատքնիս կկենդանացնէ այլ նաև կը-
» զօրացնէ ու կհաստատէ »։

« Մեր Տէրն Քրիստոսէ սահմանուած երկու
» խորհուրդ կայ Աւետարանին մէջ, որ է Մկրտու-
» թիւն և Հաղորդութիւն »։

« Ընդհանրապէս ճանչցուած միւս հինգ խոր-
» հուրդներն որ են՝ Դրոշմ, Ապաշխարութիւն,

» Բաժանայութիւն ; Միութիւն և Վերջին
» Օծումն, Աւետարանի խորհուրդներ համարուելու
» չեն, թէպէտ և անոնցմէ մէկ քանին, ոմանց՝ առա-
» քելոց սահմանադրութեանցն խոտոր հետևողու-
» թիւններէն առաջացած, և մէկ քանին ալ
» Սուրբ գրոց մէջ աւանդուած կենաց զանազան
» վիճակներու համար սահմանադրուած են, բայց և
» այնպէս տակաւին Մկրտութեան և Հաղորդու-
» թեան խորհուրդներուն հետ նոյն բնութիւնն
» կամ նոյն էութիւնն չունին. վասն զի ետքի հինգն՝
» առջի երկուքին պէս՝ յատկապէս Աստուծմէ սահ-
» մանադրուած ու հրամայուած զգալի նշանակներ
» և արարողական յատուկ կերպեր չունին »։

« Խորհուրդներն լոկ վրայնին նայուելու կամ
» պարզապէս կրուելու համար սահմանուած չեն ՚ի
» Քրիստոսէ, այլ նաև պարտինք պատշաճապէս ՚ի
» գործ ածել զանոնք։ Եւ այսպէս զանոնք արժա-
» նաւորութեամբ ընդունելով միայն՝ փրկաւէտ
» ազդմունք մի և ներգործութիւն մի կզգենունք,
» բայց անոնք՝ որ անարժանութեամբ կընդունին
» իրենց անձերուն դատապարտութիւն կառնուն,
» ինչպէս որ Սուրբն Պօղոս կըսէ »։

Արդ այս յօդուածն՝ Անգղիական Եկեղեցւոյ՝
եօթն խորհուրդ եկեղեցւոյ ընդունելն՞ կհաստատէ
թէ չընդունելը. Ո՞վ այս բացատրուած կերպէն տար-
բեր միտքով ու բացատրութեամբ կընդունի եկեղե-
ցւոյ եօթն խորհուրդները. Ի՞նչ ըսել արժան է.
Յոյնք Ի՞նչ կըսեն. Հայոց եկեղեցին Ի՞նչ կըսէ. Ո՞ր
եկեղեցին ասկից տարբեր, այս խորհուրդներուն
ամենքն մէկ և համազօր և առ հասարակ ամեն
քրիստոնէից և անոնց փրկութեանն պէտք և հար-
կաւոր կվարդապետէ. Ո՞վ չգիտեր որ խորհրդոց եր-
կուքն պարտք է և փրկութեան համներու միջոց, և
միւսներն հարկաւոր և անոնց պատրաստութեան

կամ երկրորդական շնորհաց միջոց ։ Աս կարծիս մէջ ալ Անգղիական Եկեղեցւոյն իրենց հետ և Հայոց դէմ չկրնալ ըլլալն ցուցնելու համար Հայոց Եկեղեցւոյն ալ խորհրդոց վրայ ունեցած վարդապետութիւնն դնենք հոս ։ Սկիզբէն 'ի վեր ամեն դարու մէջ սրբազան Հարց այս մասին տուած մանրամասն բացատրութիւններն զանց ընելով, այսօրուան ձեռքերնիս ունեցած երկու հաւատուոյ գիրքերնուս խօսքերն բաւական կսեպենք ։

« Խորհուրդք եկեղեցւոյ են ծէսք կամ արարո-
» ղութիւնք ինչ յԱստուծոյ սահմանեալք, յորս
» միջնորդութեամբ զգալի նշանակաց՝ ցուցեալ և
» տուեալ լինի արժանապէս ընդունողաց՝ զօրու-
» թիւն և շնորհք աստուածային և են եօթն այսո-
» քիկ Մկրտութիւն, Դրոշմ, Ապաշխարութիւն,
» Հաղորդութիւն, Քահանայութիւն, Ամուսնու-
» թիւն և Օծումն հիւանդաց ։ յորոց չորք առա-
» ջինքն ամենայն քրիստոնէի հարկաւոր են յոյժ,
» իսկ յետին երեք՝ չեն հարկաւոր ամենեցուն, այլ
» 'ի կամս իւրաքանչիւրոց թողեալ է առնուլ կամ
» չառնուլ զայնս » ( ԿՐՕՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ ) ։ Առջի չորսն երկուքի բաժնելով միշտ Դրոշմն՝ Մկրտութեան, և Հաղորդութիւնն՝ Ապաշխարութեան հետ կկատարուի, ինչպէս կընէ նաև Անգղիական եկեղեցին որով ըսել կըլլայ խորհուրդներուն երկուքն միայն հարկաւոր կճանչցուի փրկութեան ։ Որ կերպով որ կխոստովանի և կբացատրէ Հայոց եկեղեցին, ինչպէս ։

« Կրկին է մահն հոգւոյ, մի՝ ըստ տեսակին որ
» եղեւ սկզբնական մահաբեր մեղօք, երկրորդ՝ ըստ
» անհատին որ լինի ներգործական մահացու մեղօք .
» իսկ առ 'ի կենդանացուցանել զհոգին 'ի մեռե-
» լութեանցս յայսցանէ սահմանեցան 'ի Քրիս-
» տոսէ կրկին խորհուրդս Մկրտ—թի—ն և Հաղոր-
» դ—թի—ն . . . ։ Ապաքէն երկու ազգ են խորհրդոց,

» ոմանք ասին հարկաւորք հարկաւորութեամբ միջ-
» նորդի, զի առանց այսոցիկ երկուց խորհրդոցս՝ ըստ
» կարգաւորեալ օրինացն Աստուծոյ, ոչ ոք կարէ ար-
» դարանալ. և ոմանք՝ հարկաւորք հարկաւորու-
» թեամբ պատուիրանի . . . . զի այլ խորհուրդք՝
» որք են հարկաւորութեամբ պատուիրանի, ոչ են
» այնպիսի նկատմամբ բոլոր եկեղեցւոյն, այլ նկատ-
» մամբ իւրաքանչիւր անհատի, զի նկատմամբ բոլոր
» եկեղեցւոյն՝ են ևս հարկաւորք հարկաւորու-
» թեամբ միջնորդի . . . ։ Իսկ արդ՝ առանց առաջին
» երկուց խորհրդոցս ոչ ոք 'ի մարդկանէ կարէ գտա-
» նել զփրկութիւն և զկեանս յաւիտենից . . .
» իսկ այլ մնացեալ խորհուրդքն ենթադրեն զընդու-
» նողն 'ի շնորհս և 'ի սրբութիւն և տան զերկրոր-
» դական շնորհսն (ԼՈՒՍԱՇԱՒԻՂ)»։

Ահա այս վերի բացատրութիւններէն յայտնի կտեսնուի որ խորհուրդի մասին Հայոց և Անգղիականաց հասկցողութիւնն տարբեր չէ, աս կտորովս ալ Անգղիական եկեղեցին իրենց հետ Հայոց դէմ չի կրնար ըլլալ։ Խորհուրդ բառն նախ Ոսկեբերան և Օգոստինոս յիշած են մկրտութեան և հաղորդութեան համար և եկեղեցւոյ մէջ միայն երկու խորհուրդ կայ կըսեն. ասոնցմէ ետքն ժամանակ մի Եկեղեցւոյ դեռ շատ բաներուն խորհուրդ ըսուեցաւ որ մինչև տասուերկու կամ ալ աւելի կհամարուէին, բայց վերջապէս աս եօթնին խորհուրդ ըսուիլ որոշուեցաւ։ Բայց մեր նպատակն հոս ասոնք քննել չէ. մեր խնդիրն աս չէ. բանն ան չէ թէ խորհուրդներէն երկուքն նախնական ըսուին հինգն երկրորդական. Մկրտութիւնն և Հաղորդութիւնն Քրիստոսադիր ըսուին և միւսներն Առաքելադիր. բանն ան չէ, կըսեմք, թէ երկուքն պէտք խոստովանուին և հինգն հարկաւոր. բանն ան է որ Անգղիական և ուրիշ եպիսկոպոսական եկեղեցիներն ալ առանց նոր

վարդապետութեան , մեկնութեան կամ մօլորու-թեան , Անգլիական նախկին Եկեղեցւոյ հետ՝ անոր հասկցած կերպովն եկեղեցւոյ խորհրդոց եօթն թիւն կթուե՞ն մի . երկուքն կամ երեքն մէկտեղ կատարեն կամ զատ զատ , ամէնն ալ կճանչնա՞ն ու կկատարե՞ն մի : Եկեղեցւոյ այս պաշտամանցն Անգլիականք խոր-հուրդ ըսեն , գաղտնիք ըսեն , նուիրագործութիւն ըսեն , եօթն մէկ ճանչնան իրարմէ տարբեր ճանչ-նան , հոգ չէ , բանն հոն չէ , բանն հոս է որ այսօր Հայաստանեայց եկեղեցին ինչ սկզբամբ ճանչցած է ատ հինգ խորհուրդներն և ինչ հիմանց վրայ որ հաս-տատած է նէ , նոյն սկզբամբ կճանչնայ և նոյն հի-մանց վրայ կհաստատէ նաև Անգլիական եկեղեցին և ուրիշ եպիսկոպոսական ազգաց եկեղեցիներն , մա-նաւոր արարողական կերպերով , և անտարբեր աչօք չեն նայիր անոնց վրայ , զորս Ամերիկացիք չեն ճանչ-նար և նոյն մտքով չեն ընդունիր : Վասն զի Հայոց պէս ատ Անգլիական և այլ եպիսկոպոսական եկե-ղեցիներն ալ հիմնած են Գրոցն՝ Գործ . Ը . 17 և ԺԹ . 6 , Ապաշխարութիւնն՝ Մատթ . ԺԶ . 9 , Յովհ . Ի . 22 և այլոց , Քահանայութիւնն՝ Գործ . Զ . 6 , ԺԳ . 3 , Ա . Տիմ . Դ . 14 և Ե . 22 , Ամուսնութիւնն՝ Եփես . Ե . 32 , Ա . Կորնթ . Է . 7 և Ա . Թես . Դ . 3 և Վերջին Օծումն՝ Յակ . Ե . 14 և Մարկ . Զ . 13 և այլ գլուխներուն և համարներուն վրայ : Ուստի կեզրա-ցընենք թէ Անգլիական և ուրիշ եպիսկոպոսական եկեղեցիներն այս կտորով ալ Ամերիկացի քարոզիչ-ներուն հետ և Հայաստանեայց եկեղեցւոյն դէմ չեն կրնար ըլլալ :

Մենք հոս ատ կէտերս ասանկ երկար ու մանրա-մասնաբար բացատրելովնիս Անգլիական եկեղեցին ջատագովելու կամ զայն քարոզելու չենք ելած . նպատակնիս ան չէ , ինչպէս վերն ըսինք , եղածն ան-կեղծութեամբ կպատմենք , մեր ըսածներուն կամ

ըսելիքներուն մէջէն ասոր ջատագովութիւն անոր պարսաւանք կըլլայ ըսելով ճշմարտութիւնն չենք ուզեր քօղի տակ ծածկել կամ պատրուակել, ինչպէս ոմանք ըրին, և կերպով մի հակառակորդաց իրաւունք տալ. դարձեալ կըսեմք մենք Անգղիական եկեղեցին քննելու և արդարացնելու չենք եկած. հոս մեր նպատակն սա է թէ Անգղիականներն և ուրիշ եպիսկոպոսականներն այս Ամերիկացիներէն չեն, Ամերիկացւոց բոլոր մեզի դէմ մէջ բերածներնին սուտթիւն և պատրուակ է. վասն զի կհարցնենք իրենց. Անգղիական եկեղեցին այդ եօթն խորհուրդներն ի՞նչ մեկնութեամբ, ի՞նչ տարբերութիւններով և ի՞նչ աստիճան կընդունի կոր նէ, իրենք ալ նոյնչափ կընդունի՞ն մի. իրենց մեզի դէմ վկայութիւն բերած Անգղիական եկեղեցւոյ Կրօնից յօդուածներուն վերոյիշեալ 25 երորդ յօդուածն, որուն Հայոց հետ նոյն ըլլալն ցուցուցինք, իրենց ալ ընդունելի՞ է մի. վերջապէս մէջ բերուած Անգղիական եկեղեցւոյ Կրօնից 39 յօդուածներնին ամբողջապէս իրենք ալ կընդունի՞ն մի, որ յօդուածներն որ հաստատուած են Եղիսաբէթ Թագուհւոյն օրն և մինչև ցայսօր եկած թագաւորներն ալ՝ իրենց պաշտօնեաներո՛ւն մէկտեղ վաւերացուցած և այսօրուան թագուհին ևս յատուկ հրովարտակաւ անոր պաշտպանութեանն և հաւատարիմ մնալուն և միմիայն պաշտօնական կրօն ճանչցուելուն, և ուրիշ դաւանութեան ընդունող և զարգացուցիչ չըլլալուն, իր բոլոր մեծ և պզտիկ պաշտօնեաներո՛ւն մէկտեղ երդում ըրած է. յատուկ պատուէր հանած է բոլոր համալսարաններու, վարժատուններու և ամեն հասարակաց պաշտօնատանց մէջ միմիայն կրօնք ճանչցուիլ ու վարդապետուելու համար, և դէմ գործողներուն ալ Հայոց Եկեղեցւոյն տնօրինածներէն ծանր պատիժներ ու դատապարտութիւններ տնօրինած։

Անոնք ասանկ ըլլալով Ամերիկացիք որ ատ բաներուն և ոչ մէկն չընդունին նէ, անոնցմէ հերքուած ու դատապարտուած չե՞ն մի ըլլար իրենց սկզբունքներն։ Արդ՝ Անգղիացւոց ազգն և կառավարութիւնն իրենցմէ և իրենց համախոհ ի՞նչպէս եղած կրնայ ըլլալ, և անոնք ալ իրենց պէս մեզի դէմ ի՞նչպէս եղած կրնան ըլլալ, թող ուշիմք կշռադատեն։ Կրնայինք հոս Անգղիական եկեղեցւոյ կրօնից այդ յօդուածներն, դաւանութիւննին, Մաշտոցնին և ուրիշ գրութիւններնին մէկիկ մէկիկ բացատրել և ցուցնել թէ իրենք անոնցմէ չեն և թէ անոնք ալ իրենց հետ Հայոց դէմ չեն կրնար ըլլալ. բայց տոկա հիմա հոս մեզի գիտնալու հարկաւորութիւն չկայ. կխնդրենք իրենք անգղիերէներն քննելով իրենց և անոնց մէջ եղած ճիշդ տարբերութիւններնին մեզի գիտցունեն, որ մենք ալ մեր հասկցողութեանցն մէջ սխալ ունինք նէ շտկենք։

Հիւանդի ժամին մէջ սխալում կդնեն մեզի Անգղիական և այլ եպիսկոպոսական Եկեղեցեաց Մաշտոցէն առնելով մէջ բերած արձակման ձևերնին որ է, «Անձ մի իր մեղքերն մանրամասնաբար պիտի խոստովանի
» քահանային և քահանայն ալ արձակելով պիտի զայն այս կերպով.
» Տէրն մեր Յիսուս Քրիստոս, որ աւանդեաց եկե-
» ղեցւոյ իւրոյ կարողութիւն արձակելոյ զամենայն
» մեղաւորս որ ապաշխարիցեն և հաւատասցեն ՚ի
» նա ճշմարտութեամբ, թողութիւն շնորհեսցէ
» յանցանաց քոց ըստ մեծի ողորմութեան իւրում.
» և ես՝ նորին իշխանութեամբ որ տուեալ է ինձ՝
» արձակեմ զքեզ յամենայն մեղաց քոց, յանուն
Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։ Ամէն»։

Աս կտորիս համար նախ ըսած են. «Ասիկայ
» սխալ մըն է, ըստ որում ո՛չ Անգղիական ու ո՛չ ալ
» ուրիշ որևիցէ եպիսկոպոսական ազգի աղօթա-
» գրքի մէջ ասանկ կանոն մը կրնայ գտնուիլ». և

տալու աս աղջի ըսածնին մոռնալով անմիջապէս ետքը կերլեն կըսեն տար հակառակն թէ, «Ո՛ր արժան» ման ձեր թէև Անգղիական աղօթագրքին մէջ» կգտնուի, բայց միայն հիւանդներու այցելու» թեան պաշտօնին մէջ կգործածենք», որ մեր ուզած պատասխանն է. ով ցնորեցա . . . : Բայց մենք կըսաստկանանք. թող այնչափ ըլլայ, իրենք ալ՝ հիւանդներուն այցելութեան պաշտօնին մէջ թող ըլլայ՝ կգործածե՞ն մի. այսչափ միայն թող ըլլայ՝ կընդունի՞ն մի. պատասխանած են թէ «չէ՛»։ Իրենց ալ լոկ աղօթագիրքներնուն մէջ թող ըլլայ՝ կգտնուի՞ մի, յայտնի է թէ, ոչ։ Ապա Անգղիական և ուրիշ եպիսկոպոսական եկեղեցիներուն հետ մէկ չեն կըրնար եղած ըլլալ։ Այսօր միայն այս կէտին թող ըլլայ Հայոց Եկեղեցւոյն արժանիման ձեւոյն հետ մէկ և միևնոյն ըլլալով՝ որ եկեղեցւոյ մէկ մեծ խորհուրդն է, կրնանք ըսել դարձեալ թէ, Անգղիացիք՝ Ամերիկացիներէն այնչափ հեռու են՝ որչափ Հայերն։

Կըսեն թէ՝ Անգղիական եկեղեցւոյ անդամներուն շատերն չեն ընդունիր տոփկայ։ Աւասի իրենց պէս անոնք ալ Անգղիական եկեղեցիէն չեն, որով հետև կհարցունենք, կրնա՞յ մի ըլլալ որ այս ինչ եկեղեցւոյ մի անդամ մի՝ նոյն եկեղեցւոյ ընդունածներն չընդունի ու միանգամայն անդամ մնայ անոր. կամ մէկն որ այսինչ եկեղեցւոյ անդամութիւնն կըզահէ և անկէ չուզեր զատուիլ ան եկեղեցւոյն ընդունածներն՝ իր ալ ընդունածներն չե՞ն մի համարուիր։ Կըսեն թէ Անգղիական եկեղեցւոյ անդամոց շատերն չեն գիտեր անդամ աղօթագիրքնուն մէջ տասնկ բան մի գտնուիլն. բայց մենք կհարցունենք, ասա չգիտցողներն Անգղիական եկեղեցւոյ անդամ չե՞ն մի համարուիր. թէև չգիտնան՝ Անգղիական եկեղեցւոյ անդամ գտնուելովնին անոնք ալ ընդունած չե՞ն մի համարուիր. իրենք ալ իրենց մե-

ամիտ հետեւողներուն մէջ, իրենց ինչու հաւատալ, ինչ սկզբունք եւ ինչ դաւանութիւն ունենալնին չգիտցող պարզամիտներ չունի՞ն մի, միթէ իրենցմէ չե՞ն մի անոնք ։

Անգղիական եկեղեցւոյ այդպիսի արձակման ձեւ մի՝ կամ ատոր պէս Ընդհանուր եկեղեցւոյ համեմատ ուրիշ դեռ շատ կերպեր ունենալ կամ չունենալ եւ ընդհանրապէս անոնցմէ ընդունուիլ կամ չընդունուիլն ատանկներէ չենք կրնար ստուգել, եւ իրենց մէկն ցուցնեմ հարցնելու որ շատ ճշմարտախօս մէկն ըլլան իրենք ալ գիտեն, անոր կրնան հարցունել. Ներայի՝ Անգղիացւոց համար նոր սահմանուած գերեզմանատունն նուիրագործելու եկող Մալթայի արքեպիսկոպոսն է այս, որ կարծեմ դեռ հոս ըլլալու է, անոր կրնան հարցունել. որն որ եթէ իրենց պէս ըսէ մենք ալ կհամոզուինք, ապա թէ ոչ ըսածնին սուտ է ։ Այս առթիւ կհարցունենք, իրենք ալ այս տեսակ նուիրագործութիւններ ունի՞ն մի, կընդունի՞ն մի, կամ առ նուիրագործութեան պաշտամանցն իրենք ալ իբրեւ եկեղեցականներ հաղորդդանուեցա՞ն մի. եթէ չէ՛. ապա կեզրակացնենք թէ, Ամերիկացի քարոզիչներն Անգղիական եկեղեցիէն չեն եւ չեն կրնար ըլլալ եղեր ։

Չորրորդ և վերջին մոլորութեան մէջ սխալում կդնեն մեզի. « Ամերիկացի Արեւելեան կամ Լուսաւորչական ըսուած » հերձուածող աղանդաւորներն մերժուած են ինչ- » պէս մենէ նոյն եւ Անգղիական եւ այլ եկեղեցիներէ- » րէն », խօսքերնիս ։ Այս կտորն ջրելու համար երկու պատմութիւն մէջ կբերենք եւ [illegible] կկոչեն. տեսնենք թէ ինչ է եղեր զօրութիւննին եւ առ զօրութիւննուն ուժն սորվինք ։ Անգղիոյ մէջ ընկերութիւն մի կայ եղեր իրենց սուրթեանցն խաբուած անդամներէ բաղկացեալ Տաճիկներն եւ Հրեաներն դարձի բերելու եւ վերի գրուած կերպովն հե-

թանոսութիւնէ քիչ տարբեր ամենողորմելի վիճակի մէջ գտնուող Հայոց ազգ մի լուսաւորելու մասին իրենց օգնելու համար հաստատուած. բայց մենք Անգղիոյ մէջ Տօրիական կամ Ուիգական չկայ չըսենք. Այս ընկերութեան եպիսկոպոսականներէն ալ օգնող կայ եղեր. վերոյիշեալ պատմութիւնն մտիկ ընելէ ետեւ ով չօգներ որ քրիստոնեայ անունն կրէ. բայց և այնպէս, այս ինչ դաւանութենէ կամ ազգէ եղող մի ուրիշ դաւանութենէ եղող ընկերութեան մի կամ ազգի մի օգնելով նոյն դաւանութենէ՞ն մի եղած կըլլայ. ատով եպիսկոպոսականներն Ամերիկացիներէն եղած կրնա՞ն մի ըլլալ, նոյն իսկ հոս ալ ատոր օրինակներն չե՞ն մի տեսնուած։

Երկրորդ պատմութիւննին է Պոլսէն չեղող արեւմտեան ազգերն ինքզինքնին առհասարակ Եւրոպական կկոչեն եղեր։ Եւրոպական բառն ինչպէս ըսինք Ամերիկացւոց հնարած մէկ պատրուակ կամ դիմակն է, որ կուզեն իրենց խաբէութեանցն ու ստութեանցն ծածկոյթ մի ընել. զի թէ որ այդ բառն պարզապէս Աւետարանն ճանչցող ըսել է՝ մենք ալ Եւրոպական ենք, մենք ալ ան կճանչնանք, զի այս մտքով ատ բառն միայն իրենց սեփհականելով մեզի Քալվինական կամ Լութերական կամ Պրոտեստական չեն կրնար ըսել։ Իսկ եթէ Աւետարանէ զատ բան չճանչցող, կամ Աւետարանն իրենց առանձնական հասկըցողութեանն նիւթ ըրած, նախնի և Ընդհանրական եկեղեցւոյ հասկցողութեան չհետեւելով ամէն բան վեր 'ի վայր տապալող, և ամէն հաւատալիք շարժման ու փոփոխութեան մէջ ճանչցող իրենց պէս բազմաթիւ. ճիւղերու բաժնուած մոլորեալ աղանդաւորներ կիմանան, Անգղիական և այլ ազգաց եպիսկոպոսական եկեղեցիներն ալ ատ մտքով Եւրոպական չեն, չեն կրնար ըլլալ և չեն ընդունիր. դըժուարութիւն չկայ մայրաքաղաքս գտնուող Անգղիա-

Յունաստան. որով ըսել կ'ըլլայ որ իրենց համար նշանակած մեծ Թիւերնին շատ սխալ է, վասն զի այս ըմբռնմամբ Թիւերնին բնաւ—ն միլիոնն շատ պիտի անցնէր . . . ծաղրելի խորհուրդ: Միայն Ամերիկայի քարոզիչէ մի զատ աս երկու տէրութիւններն և ազգերն ներկայացնող աս ժողովին մէջ ալ ով գտնուած կրնայ ըլլալ: Տաճկաստանի և Յունաստանի մէջ քանի՞ հոգի ունին. անոնց ալ արժէքն ցուցուցինք: Ասոր ահա ամէն մարդ Տաճկաստան և Յունաստան ներկայացնող նուիրակներէն ուրիշ նուիրակներուն ալ ներկայացուցած ազգերն ու երկիրներն կրնայ դիւրաւ չափել ու համրել . . . :
Մենք իրենց համար Տաճկաստանի և Յունաստանի մէջ ունեցած ընդունելութիւնուն չափ Անգղիոյ և ուրիշ եպիսկոպոսական արևմտեան մեծամեծ ազգաց մէջ ալ ընդունելութիւն չունենին չըսենք, այլ թէ որչափ որ մենք նոյնչափ և անոնցմէ մերժուած ու հերքուած են, զոր գործեալ կըսենք, կընդենք ու կհաստատենք:

Կըսեն թէ այդ նուիրակներուն թիւն քանի մի հազարի կհասնի եղեր (թէ որ սուտ չէ), բայց քանի մի միլիոնի ալ հասնի դեռ շատ միջոց կայ բնաւ—ն միլիոնի տափն լեցնելու, զի անտարակոյս ենք որ ան նուիրակներուն խիստ շատն ինքզինքնին միայն ներկայացուցած ըլլան: Կըսեն թէ աս ժողովին մէջ եպիսկոպոսական ալ կայ եղեր Անգղիոյ և ուրիշ ազգաց սեփհական եկեղեցիներէն. կըսենք որ յիշեալ եկեղեցիներէն պաշտօնական կերպով Ամերիկայի քարոզչաց ընկզանցն միաբանելու համար ղրկուած անձինք չեն կրնար ըլլալ. ուստի գտնուող առանձնականներն ալ իրենց մտքովն Աւետարանական կրնա՞ն մի համարուիլ, քանի որ յիշեալ եկեղեցիներուն անդամութիւնն պահած ըլլան: Եթէ յիշեալ եկեղեցիներուն ընթացքն չհաւնող և հետե-

ւապէս անոնց անդամութենէն զատուած անձինք էին, ինչպէս կրնան դարձեալ եպիսկոպոսական կոչումը և նոյն եկեղեցիներուն երեսփոխաններն համարումը · · · ։ Բայց որ և իցէ, ըսենք թէ իրենց ըսածին պէս ուրիշ եպիսկոպոսական եկեղեցիներու կողմէ ալ նուիրակներ և Անգղիական եկեղեցւոյ կողմէն ալ Քեանթէրպըրրիի կամ Օգսֆըրտի Լօրտ-Եպիսկոպոսն (Արքեպիսկոպոս) գտնուած ըլլայ մասնաւոր պարագայի կամ գործի մը խորհուրդին ուրոշմանն համար ։ Անկից կհետևի՞ մի որ անոնց ամենն ալ սոյնցմէ կամ սոյնք անոնցմէ եղած ըլլան ։ Ասանկ կարգի մէջ միաբանութիւնն սկզբանց ու դաւանութեան վրայ պէտք է ըլլայ և մեր խօսքն ալ անոնց վրայ է, մեր ցուցուցած տարբերութիւնն ալ սկզբանց տարբերութիւն է. քանի որ ամեն մարդ իր եղած տեղն մնայ, չէ թէ մէկ երկու, հազարաւոր ժողով ալ ըլլան սկզբամբք նոյն կրնա՞ն մի համառուիլ ։ Աս ամեն ճիւղերուն մէջ հաստատուած հաւատոյ և ծիսական դաշնադրութիւններն ո՞րն է, որոշած պայմաններնին ի՞նչ է. քանի որ ասանկ պայման կամ դաշնադրութիւն մը չեն կրնար ցուցնել և քանի որ մենէ ունեցած հեռաւորութիւններնէն շատ աւել իրենց բաժանմունքներնուն մէջ իրարմէ զանազան տարբերութիւններ ու հեռաւորութիւններ ունին, ըլլալ մեզի դէմ ինքզինքնին մեծ ցուցնելու համար մէկ և միաբան հրատարակելնին սու-տին չըլլայ նէ ալ ի՞նչ կրնայ ըլլալ · · · ։ Շատ անգամ շատ Հայական, Յունական, Պապական և այլ եկեղեցականներ ու աշխարհականներ մէկ տեղ եկած են ու շատ բանի վրայ խօսած, խորհած ու վիճած, ու շատ անգամ ալ այս կամ այն բանին վրայ միաբանած, բայց դարձեալ ամեն մէկերնին եղած տեղերնին մնացած. ի՞նչ կըլլայ եղեր ասկէ · · · ։ Ահա ասով ալ չկրցան ապացուցանել Ամերիկացի

քարոզչաց և անոնց սկզբանցն Անգղիական և այլ եպիսկոպոսական եկեղեցիներէն մերժուած չըլլալն. պէտք է կըսենք միմիայն սկզբունքներուն նոյնութիւնն ցուցնեն, եթէ ունին, և անով միայն ապացուցանեն բնական միջոցի միաբանութիւններն որ միանգամայն ու միապէս մենէ տարբեր ըլլան և իրենց մէջն միաբան, ապա թէ ոչ սուտ են և ստախօս։

Նշանաւոր ասոնք են եղեր Ամերիկացւոց՝ Անգղիական և ուրիշ արևմտեան ազգաց եկեղեցիներէն մերժուած չըլլալնուն դէմ ամենէն զօրաւոր ապացոյցներ-նէն. ո՛վ զօրութիւննուն . . . ։ Մէյ մ՚ալ ելեր կհարցունեն թէ “Ասոնցմէ աւելի զօրաւոր ա՛լ ի՞նչ ապա- » ցոյց կրնայ ըլլալ». կըսենք թէ, թէ և ամենաանզօր՝ բայց երանի թէ գոնէ այսչափն իրաւ ըլլար, և ուրախ ենք որ ասոնցմէ աւելիններն և ասոնցմէ զօրաւորներն չունին եղեր։

Վերէն 'ի վար մինչև հոս քաշն 'ի քաշն, սուտ ու մութ և իրարու հակառակ խօսքերով ու փախուստներով հաստատել կամ պատրուակել ուզելնէն ետև թէ Պապէն զատ եղող բոլոր արևմտեան ազգերն մէկ և միաբան են իրենց սկզբունքներուն և Հայերէն ունեցած տարբերութիւննուն և հակառակութիւննուն մէջ և ամենևին իրարմէ տարբերութիւն և իրարու հակառակութիւն չունին, իրար չընդունիլ չունին, և թէ Ամերիկացիներն և իրենց սկզբունքներն և ո՛չ ազգէ մի և եկեղեցիէ մի մերժուած են. զանոնք մոռնալով՝ հոս կելլան ան ամեն ըսածներնուն հակառակն կխոստովանին թէ, “Հայոց, Յունաց և
» Պապականաց իրարմէ ունեցած հեռաւորութիւն
» նոյն չափ իրենք ալ իրենց մէջ հեռաւորութիւն
» ունին Անգղիական և այլ ազգաց եպիսկոպոսական
» եկեղեցիներուն հետ, առաջիններուն իրարմէ ու-
» նեցած մերժմանն չափ իրենք ալ մերժուած են
» Անգղիոյ, Շուէտի, Տանիմարգայի և այլ ազգաց

« Արդ՝ առ նոսա Գրիգոր ասէր, Երկոտասան ազ-
» գացդ որ ՚ի սփիւռս էք՝ ողջոյն։ Ողջոյնս այս այն
» է, զոր Տէրն մեր ետ իւրոց աշակերտացն և ասէ,
» յոր տուն մտանիցէք՝ ասասջիք ողջոյն տանս այս-
» միկ (քարոզեսջիք զԱւետարանն,) եթէ իցէ անդ
» որդի ողջունի (հաւատացող աւետեացն՝) եկեսցէ
» ողջոյնն ձեր ՚ի վերայ նորա, ապա թէ ոչ՝ ողջոյնն
» ձեր ՚ի ձեզ դարձցի։ Արդ՝ վասն այսորիկ ուր հա-
» սանէին նոքա (Սուրբ Առաքեալքն) անձամբ տային
» նոցա զՈղջոյնն՝ զերկնաւոր խաղաղութիւնն պար-
» գեւելով արժանաւորացն (զբանաւոր կամ զձայ-
» նաւոր աւանդութենէ աւետեացն ասէ։) Իսկ
» բացակայացն և տարակայելոցն ՚ի Գիրս գրէին զՈղ-
» ջոյնն և առաքէին, և ոչինչ սակաւ նպաստ լինէր նոցա
» Գիր ողջունին՝ քան զԲարբառ լեզուին (զի ոչ եթէ
» այլ կամ պակաս ինչ ՚ի գիրս գրէին կամ այլ կամ
» աւելի ինչ լեզուաւ ճառէին, այլ զնոյն որ ինչ
» ՚ի գիրս՝ և լեզուաւ, և որ ինչ ՚ի լեզու՝ և գրովք
» քարոզէին »։)

« Զի զոր օրինակ՝ բան ՚ի մտաց յառաջ եկեալ՝
» կայի ՚ի լեզուի և փոխակի միջնորդաւ օդոյն
» առ լսողսն, նմանապէս և Բան միացեալ ՚ի Գիր՝
» ներգործութեամբ աչաց զնոյն վճարէ։ Եւ զայս
» գիտելով Առաքելոցն Սրբոց՝ անխտրաբար երբեմն
» Լեզուաւ տային զՈղջոյնն և երբեմն Գրով։ Զնոյն
» զայս Ողջոյն Առաքելականին՝ և աստուածընկալն Պօղոս
» ծանուցեալ, և զօգուտն որ ՚ի նմա ճաշակեալ,
» նմին իրի՝ յամենայն Թղթին իւր ՚ի սկզբանն և
» ՚ի կատարածին Գրէր, հաստատել նովաւ զանձինս
» աշակերտելոցն։ Վասն զի տիրապէս ՚ի վերայ հաս-
» եալ էր շնորհին, եթէ ո՛չ սոսկ Ձայնն (Ձայնաւոր
» Աւանդութիւնն) է, այլ նոյն ինքն Բանն Աստուծոյ
» (Գրաւոր Աւանդութիւնն՝) երկնաւոր խաղաղութիւնն
» միացեալ ՚ի մարմնի՝ որպէս Բան ՚ի Գիր, և այնպէս ՚ի

» ներքս մտանել 'ի վարս մարդկան՝ զհակառակ խա-
» ղաղութեանն լուծանի և զխռովութիւն սատա-
» նայական ամենևին արտաքս վարէր »։

“ Եւրդ՝ և մեք զանձինս մեր արժանիս արա-
» ցուք այսպիսի ողջունի, և արժանի առնեմք՝ եթէ
» բարեգործութեամբ զՔրիստոս 'ի մեզ ընդունի-
» ցիմք, ոչ միջնորդովք առաքելովքն (ձայնաւոր Ա-
» ւանդութեամբ Առաքելոց՝) այլ անձնիշխանական
» մերով յօժարութեամբս (ընթերցուածովք Սուրբ
» Գրոց.) զի տուն նորա եմք, եթէ զգայութեամբս
» (ընթերցուածով Սուրբ Գրոց) աւել ածիցեմք և
» զարդարիցեմք զմեզ՝ և զամենայն ներհակ պատե-
» րազմ Աստուածային Ողջունին (զհակառակս Սուրբ
» Գրոց՝) քերու զաղբ անպիտան 'ի բաց ընկենու-
» ցումք, ոչ միայն Բանն 'ի ներքս 'ի մեզ մտանիցէ
» և լուծանիցէ զհակառակն՝ որպէս առ Մարիամն,
» այլ և զՀայրն ընդ ինքեան 'ի ներքս ածիցէ։ Որ
» սիրէ զիս ասէ՝ զԲանն իմ պահեսցէ, և Հայր իմ
» սիրեսցէ զնա, և առ նա եկեսցուք՝ և օթևանս
» առ նմա արասցուք։ Իսկ որ սիրէ Ճշմարտապէս
» զՅիսուս զինկապէս խաղաղութիւնն, ոչ ինչ յայն-
» ցանէ գործէ՝ զորս ասէ Բանն Ճշմարտութեան (այս-
» ինքն, որ ինչ հակառակ է Ս. Գրոց.....։) Եւ
» զի Բանն Աստուծոյ է՝ որ դատապարտէ.... »։

“ Իսկ մեք ամենեւին հրաժարեցաք յընթերց-
» մանէ Աստուածային Գրոց՝ ուր մեր ամենայն կեանքս
» պարտ էր յայն ծախել. և կերակուր և ըմպելի և
» քաղցրութիւն զայն վարկանել, և համարձակու-
» թեամբ ասել Աստուծոյ ընդ Դաւթայ, քաղցր են
» 'ի քիմս իմ Բանք քո՝ քան զմեղր բերանոյ իմոյ։ Այլ
» և մեր ճառք և արթնութիւն և հանգիստ և աշ-
» խատութիւն և երգք հոգևորք ընթերցուած Գրոց
» արժան էր լինել. Իսկ մեք անձամբ զսպառնալիսն
» Աստուծոյ ձգեմք 'ի մեզ՝ զորս և սպառնայր Իսրա-

» յելն․ Տաց ձեզ, ասէ, ոչ սով հացի․ և ոչ ծա-
» րաւ ջրոյ, այլ սով լսելոյ զբանն Տեառն․ և մեք այս-
» պիսի ծարաւով պապակեալ՝ ոչ թէ առ ՚ի չգոյէ Բա-
» նին, այլ ՚ի կամակոր մտաց, և զայն զայս ոչ միայն
» ստացանել ոչ փորձանիմք, այլ և զայլս բամբասեմք՝
» որք ընթեռնուն (զԱստուածաշունչ Գիրս) և յայսպիսի գոր-
» ծառնութիւնս պարապեն․ ․ ․ ․ ։ Արդ՝ լսե՞ս ըզ-
» տրիտուրն այսպիսի աշխատութեանց․ և չամաչեմս
» և չակնածեմս բամբասել, և զայն ո՞չ գիտեմ՝ զի
» զՕրէնսն բամբասես և զՕրէնսն դատես․ զի Պօղոս
» աշխատութիւն կոչէ և դու դատապարտութիւն։
» Սորին վասն յայսպիսի թշուառութիւնս դարձաք,
» և ամենայն կեանք մեր և կարգք և օրէնք և դա-
» շինք եղծեալ ապականեցան՝ և խանգարեալ ա-
» պակեցան։ Օրէնք Գրոց ոչ անսամք և զառ ՚ի նոցանէ
» (Դ Ա․ Գրոց) շահն ոչ ամբարեմք․ այլ՝ յանկարգու-
» թիւնս հասաք կրօնաւորքս և զդաշինս՝ զոր ընդ
» Աստուծոյ եդաք, դարձեալ վերստին մեզէն քա-
» ծաք, և զանզգաղ կեանս մեր կորուսաք, և զազա-
» թըս մեր և զմաղթանս պաղատանաց աղտորեցաք,
» և զսրբութիւնս մեր աղտեղացուցաք և զանկեղծէն
» առաքինութիւնս մեր ժանտացուցաք, և ամենայ-
» նիւ սանձակոտորք եղաք իբրև զձիս ամեհիս և
» զջորիս անկուշտս․ ․ ․ ․ ․ ։ Իսկ այսօրիկ ա-
» զգացաւ վարդապետն ՚ի Գրիգորիոսն Աստուածոյ (՚ի Սուրբ
» Գիրս)՝ ո՞չ ՚ի հայրէ և ոչ առաքեալէ և ո՞չ նեղ-
» [illegible]ութեամբ, այլ յօժարութեամբ և սիրով․ այ-
» սոքիկ են կերպարանք տիրապէս հաւատոց․ Իսկ
» անհաւատութիւնն է՝ չհաւատալ և ոչ մի ինչ Գրի-
» գորեանցն Աստուածոյ՝ և ոչ կատարել․ ․ ․ ․ ․ ։ Իսկ
» զայս անհաւատութիւնն ո՞չ եթէ զայնր հաւատոյ
» ասեմ, որոյ խոստովանութիւնն ՚ի սուրբ Երրորդու-
» թիւնն է, այլ զայն ասեմ՝ որ զանուն քրիստոնէի
» զգեցեալ ունի և զգործս անհաւատի կատարէ․

» այլ և գործովք, և մի՛ գործովք միայն՝ այլ և ու-
» ղիղ հաւատովք, և մի՛ հաւատովք միայն՝ այլ և
» յուսով և սիրով և խոնարհութեամբ և հեզու-
» թեամբ։ Եւ զի՞րդ այսու անձնայնիւ փառաւոր առնի-
» ցեմք զնա՝ ասիցէ ոք. արդեօք։ Եթէ ընթերցասցուք Գրոց մի-
» տնեմք և զնա 'ի նոյանէ ('ի Սուրբ Գրոց) ուսանիմք 'ի մեղանքս
» րեմք. վասն զի չէ և չէ հնար յօգտակարացն և յառաքինագործացն և
» որ 'ի փառս Աստուծոյ 'ի վեր ելանեն, առանց սպասու՝ ԱՌԱՆՑ
» ԳՐՈՑ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԵԱՆ. սորին վասն և Տէր մեր
» յորդորէ զմեզ՝ քննել զԳիրս. և զՍադուկեցիսն կըշ-
» տամբեալ յանդիմանէ՝ որ մոլորեալք էին և ոչ
» գիտէին զԳիրս՝ և ոչ զզօրութիւնն Աստուծոյ։ Տեսանե՞ս,
» զի զօրութիւնն Աստուծոյ՝ Գրոց գիտութեամբ և
» վարդապետութեամբ ծանուցեալ լինի, և ԶՆՈՑՆ
» ԻՆՔՆ ԶԱՍՏՈՒԱԾ ՉԿԱՐԷ ՈՔ ԳԻՏԵԼ ԿԱՄ ՊԱՇՏԵԼ՝
» ՈՐՊԷՍ ՊԱՐՏՆ Է, ԱՌԱՆՑ ԳՐՈՑ ԳԻՏՈՒԹԵԱՆ»։

« Լո՛ւր Պօղոսի, միտ դիր ասէ ընթերցուածոց
» Գրոց մխիթարութեան, մի՛ անփոյթ առնէր զշնոր-
» հացդ՝ որ 'ի քեզդ են, և դարձեալ թէ՝ համբե-
» րութեամբ և մխիթարութեամբ Գրոց զյոյսն ըն-
» կալցուք. և դարձեալ Մեծնոյն Գիրք Աստուածաշունչ
» են օգտակարք և 'ի խրատ և 'ի վարդապետութիւն մեզ գրե-
» ցան։ Եւ Մովսէս հրամայէ խօսել 'ի նոսա (յՕրէնս,
» 'ի Գիրս Սուրբս,) 'ի նստիլ 'ի տան, և 'ի գնալ 'ի ճանա-
» պարհի, 'ի ննջել և 'ի յառնել, և գրել զնոսա 'ի վերայ
» սեմոց տանց քոց և 'ի դրունս քո, և երկիցի ասէ՝ անշարժ
» առաջի աչաց քոց։ Եւ Դաւիթ 'ի սաղմոսարանի անդ
» ասէ, խորհել յՕրէնս Տեառն 'ի տուէ և 'ի գիշերի.
» և այնու լինիլ որպէս ծառ՝ որ տնկեալ է 'ի գնացս
» ջուրց։ Զի որ զպտուղ իւր 'ի ժամու տացէ՝ ասէ, և
» տերև նորա մի՛ թափեսցի։ Վասն զի ո՞ր ջուր գիտէ
» այնպէս զտունկս աճեցուցանել՝ և պտղաւէտ և
» տերևաշատ առնել, որպէս ընթերցուած Աստուա-
» ծոյին Գրոց՝ զմիտս։ Եւ կամ ո՞ր անձրև գիտէ այն-

» պէս սնուցանել զքոյս և քաջուղէշս առնել, որպէս
» Պետրոսին Գրոց՝ զհոգիս աստուածատէրս »։

« Տեսանես, եթէ որքան փոյթ եղև Քրիստոսի, » Ինքեամբ և Առաքելովք և Մարգարէիւք յորդորել զմեզ » յընթերցուածս Գրոց Սրբոց՝ կրթասէր և խնամա- » կալու լինել, ջանք այնմ պարապել և 'ի Գիրսն և 'ի » փունջեան 'ի նոյն փոխել. ընդ նոյն հոգալ. միշտ 'ի նոյն խոկալ և » ինքեան կերակուր և ըմպելի հոգևոր՝ զնոյն վարկանել. և ա- » սել՝ ըստ մարգարէին, քաղցր են 'ի քիմս իմ Բանք » քո՝ քան զմեղր բերանոյ իմոյ, և դարձեալ՝ սիրեցի » զՕրէնս քո՝ քան զամենայն ոսկի և զտպազիոն, և » դարձեալ կանխեցի յառաւօտու 'ի խօսել ինձ » զԲանս քո, և այլք՝ ոյք 'ի սոյն միտս բերին։ Նաև » արդ՝ դարձեալ յետ այսքան յորդորական բանիցս՝ » են ոմանք որք ոչ գիտեն (և կամ ոչ կամին գիտել,) » եթէ ընաւ զինչ Գիրքն իցեն և կամ յինչ պէտս շա- » րագրեցան (Սուրբ Գրքին միմիայն Կանոնականու- » թիւնն ճանչնալ չուզողներուն հարցունելու է » . . . . . ։)

« Օ՛ի ումն որովայնի՝ իբրև խուժադուժ տիկնոջ » կայ 'ի ծառայութիւն և պորտոյ սպաս տանի իբրև » Աստուծոյ և յամօթալիսն պարծի, և ումն 'ի տար- » փանս պոռնկութեան անգիտանայ, և մարմնոյ » ցանկութեամբ գերեալ՝ զօրէն խոզի միշտ 'ի տղմի » թաւալի, և միւս ումն երկրորդ կռապաշտութեան » կայ 'ի ծառայութիւն և կորուսիչ արծաթոյն իբրև » տեառն 'ի հարկաւորութիւն, իսկ այլ ումն ատելու- » թեան կամ ոխակալութեան, կամ նախանձու կամ » զրպարտութեան եղբօրն և կամ զրկանաց զհետ » երթալով՝ զքաղնուն 'ի մարմնականս, զրկեալք 'ի » ճշմարիտ հոգոցն, այսինքն յընթերցմանէ Գրոց » Սրբոց։ Նաև զայն ոչ գիտեն եթէ այս ամենայն չա- » րեք յանուսումնութենէ (Գրոց Սրբոց) 'ի ներքս » մտանեն՝ ժանտացուցանել զհոգին. և ոչ միայն

» այնպիսի ժանդքն ոչ ընթեռնուն (զՍ․Գր․,) այլ և
» աւելորդ գործ վարկանեն զնոսա ։ Այդ այնպիսիքն
» ողբոց և սրտատրուց են արժանաւորք, զի կոյր՝
» գոլով զընկեալ 'ի ճառագայթից արեգականն, տու-
» գանս վարկանի. և նոքա ագիտութեամբն զընկեալք
» 'ի Լուսաւորչէն Աստուծոյ Աստուածաշնչեն ('ի Գրոց
» Սրբոց՝) ոչ զգան, և տուգանս ինքեանց ոչ վարկա-
» նին զայս »։

« Այժմ հարցցուք զնոսա՝ որք աւելորդ գործ հա-
» մարին զընթերցումս Գրոց։ Պօղոս՝ որ Քրիստո-
» սիւն խօսէր, որ ղամձաւ բանս լուաւ, Ընթերցման
» Գրոց հորդորանայր և նորին աղագաւ պատուիրէր ա-
» շակերտին, յորժամ գայցես առ զՄատեանն ընդ
» քեզ բերցես, և դու չմկնածես և չտմաչես (Պա-
» ւլոս և արքանեկացն հարցնելու է տա խօսքերն)
» աւելորդ զնոսա (զընթերցումս Գրոց) համարել,
» և դատարկութեամբ զկեանս քո անցուցանել. և
» զո՞ր պատասխանատուութիւն ունիցես և կամ զո՞ր
» ներելալ թողութիւն։ Այլ արդ միտ դիր ; եթէ
» զի՞նչ խրատէ քեզ երանելին (Պօղոս)․ կամ թէ ասէ
» արբուցի ձեզ և ոչ հաստատուն կերակուր. և
» զայս զԱստուածաշնչէն ասէր. զի որպէս կաթն
» սնուցիչ է մանկանց՝ մինչև 'ի կատարելոցն սեղան
» զնոսա հասուցանիցէ, նմանապէս և Բանք Գրոց
» Սրբոց՝ են սնուցիչ մտաց հոգւոց, մինչև հաս-
» նիցեմք 'ի չափ հասակի կատարմանն Քրիստոսի,
» վասն զի միտք զբանս քննեն, և քիմք զկերակուրս
» ճաշակեն։ Զի որպէս 'ի պակասել կերակրոցն՝
» թարշամի մարմինն և մեռանի, նոյն գունակ 'ի
» պակասել Բանին Աստուածաշնչեանն Քրիստոսի (Սուրբ
» Գրոց) որ է կերակուր հոգւոց, հոգին զկենդանու-
» թիւնն՝ որ ըստ Աստուծոյ է, կենդանանալ ո՛չ կարէ։
» Այլ արդ՝ որոց ճաշակելիքն կիրթք են ընտրութեան
» բարւոյն և չարի, 'ի միտ առնուն զոր ասեմս »։

« Արդ՝ ուրեմն յետ այսքան երևելի օրինակաց՝
» մի լիցուք տղայք մտօք, այլ 'ի չարեաց տղայա-
» ցուք. զի մի և մեզ մեղադրիցէ Պօղոս՝ որպէս
» Կորնթացւոցն, եթէ պարտ էիք վարդապետք լի-
» նել վասն ժամանակին. արդ՝ պիտոյ է ձեզ դարձ-
» եալ կաթն արբուցանել, զի ամենայն՝ որ կաթնկեր
» է՝ անէ, տգէտ է Բանին Արդարութեան: Եւ արդ
» զինչ ասացեալս. եթէ զօրօրինակ տղայն ոչ գիտէ
» Սրբութիւն առնել 'ի մէջ յուր կերակրոյն և պիտա-
» ւոյն, և բազում անգամ զկոշտ ինչ 'ի բերան իւր
» առեալ՝ ծամէ, և զմնասակար ինչ իրս ուտէ. իսկ
» 'ի յարբունս հասեալ՝ ոչ այնպիսի անմտութեամբ
» վարի. այլ գիտէ իմաստութեամբն ընտրել 'ի մէջ
» կերակրոցն, զպիտանին ախորժելով ուտել, և
» զմնասակարն 'ի բաց ընկենուլ. Նմանապէս և մեք
» արբցուք զկաթն Բանին Աստուծոյ 'ի ստեանց Գրոց Սրբոց,
» մինչև հաստատեսցին ճաշակելիքս մեր ՅԸՆՏՐՈՒԹԻՒՆ
» ԲԱՐՒՈՑ ԵՒ ՉԱՐԻ, և հասանիցեմք 'ի չափ հասակի
» կատարմանն Քրիստոսի »:

« Եւ զիարդ կիրթ լինիցին ճաշակելիքն Ի ԳՐՈՑ
» ԳԻՏՈՒԹԵՆԷ՝ ասիցես Թերևս: Յորժամ այնմ պարապի-
» ցեմք, յորժամ զնովաւ գայցեմք, յորժամ մեզ զբաղումն և հոգս
» և վաստակս և աշխատութիւնս զնոյն առնիցեմք, յորժամ զնա
» մեզ հանգիստ և փառս և կերակուր կենդանութեան և գինի
» ուրախարար վարկանիցեմք, յորժամ ըստ խրատուն Սողոմոնի վա-
» րիմք առ նա. զիմաստութիւնն քոյր մեզ առնել, և գիրկս ար-
» կանել նմա, և գրել զնա յընդարձակութիւն սրտի, և քան
» զամենայն պատուական պատուականագոյն համարել զնա: Եւ
» այսպէս կիրթ լինին ճաշակելիքն յընտրութեան բարւոյն
» և չարին, այսպէս կարեմք Սրբութիւն առնել ապրեցու-
» ցանող կերակրոյն և մահացուցչին:

« Արդ՝ կրթասէրք լիցուք առ այս (առ Սուրբ
» Գիրս) աշխատել, զի մի զկոշտ ինչ հերձուածողական
» կարծեաց 'ի բերան առեալ ծամեսցուք, և կամ զմնա-

» սակար դատնութիւնս դաւանութեան նոցա ճա-
» շակեմք. վասն զի ոչ օտարս զինքեանս անուանեն
» Անկեղեցւոյ՝ իբրեւ զհեթանոս կամ որպէս զհրէ-
» այս, այլ իբրեւ զքրիստոնեայս ՚ի ներքս մտանեն՝ եւ
» ապա հերձուած զթոյնս դաւանութեան, եւ զօտար
» ուսմունս իւրեանց ՚ի կէր արկանեն՝ խառնել եւ պղտո-
» րել սակաւուն զուղղափառաց զմարդիկս (ընդհանրական
» Գրոց Սրբոց). . . . : Օրոց զնոսա զամենեսեան
» թողցուք սակաւուն առենին Քրիստոսի՝ դատել, եւ
» եւ մեք կիրթ կացցուք զքինս մնալ մերոց ՚ի Տեղե-
» կութեանէ Լուսաւորչին Գրոց, զի զանձինս եւ զընկերս
» մեր ապրեցուցուք . . . . : Նմանապէս եւ մեք
» Տեղեկութեամբ Գրոց Սրբոց քննեսցուք զբազում ու-
» սմունս այլ ազգաց, եւ տեսցուք՝ եթէ ուսուցին՝
» զոր նոքա ունին, կանոնական եւ Լուսաւորչական եկեղեցւոյ
» է, եւս ընտրօղնելի է եւ պաշտելի, ապա թէ ոչ՝ եւ այլ
» ազգ ուսուցանեն (այսինքն չէ համաձայն Սուրբ Գրոց),
» ՚ի բաց թողլոց ՚ի նոցանէ իբրեւ յերեսաց օձի, եւ զգուշասցուք
» զանձն ՚ի բանից նոցա՝ որպէս ՚ի բռնից ծուղակաց: Որպէս
» եւ դու ինքնին ընկալար զգուշութիւն ՚ի Պետրոսէ՝
» որ զգուշացուցանէ Սիրողսն ՚ի ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ նոցա զրու-
» եաց, եւ քեզ ՚ի ԶԳՈՒՇՈՒԹԻՒՆ. նմանապէս եւ ՚ի
» Պօղոսէ եւ ՚ի Յովհաննէ, եւ ՚ի նոցին հետեւողացն՝
» որ զնոցայն ընկալեալ կանխագիտութիւն, զգուշու-
» թեամբ զհետ նոցա գնացին, ոչ յաջ խոտորելով եւ ոչ
» յահեակ, ոչ յաւելուն ՚ի նոցա ԿԱՆՈՆԱԴՐԵԱԼՍՆ՝ եւ ոչ պակա-
» սեցուցին . . . . : Սորա զայս դաւանութիւնս եւ եւս
» զանձառագոյնսն (Հարքն մեր) Նահապետացն սրբոց
» որպէս զաստուածային ժառանգութիւն որդի ՚ի
» հօրէ առեալ հասուցին մինչեւ առ մեզ անխախտ ՚ի
» Հերձուածոյ՝ եւ որքան ինչ միանգամ կարծիք այս
» կանչացն մնայ: Իսկ մեք . . . . ՄԻԱՅՆ Ի ԳՐՈՑ
» ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԵԱՆՆ ԶԱՅՍՈՒԻԿ ԱՄԲՈՂՋՍ ՊԱՀԵՍՑՈՒՔ . .
» . . : ԵՒ ԶԲՈՎԱՆԴԱԿ ԲԱՆՍ ՊԱՏՈՒԻՐԱՆԱՑ ՊԱՏԳԱՄԱՑՆ

» ՏԵԱՌՆ, ԵՒ ԶՎԿԱՅՈՒԹԻՒՆՍ ՈՐ Ի ՆՈՍԱ ՎԱՍՆ ՈՒՂՂԱ-
» ՓԱՌ ՀԱՒԱՏՈՑՆ ԵՒ ԲԱՐԻ ԳՈՐԾՈՑ . . . . : Այսպէս
» վասն և յորդորական ԶՃՇՄԱՐԻՏ ՓԱՌԱԲԱՆՈՒԹԻՒՆՆ
» ԵՒ ԶՈՒՂԻՂ ՀԱՒԱՏՍ ՅԱՅՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ ԳՐՈՑ ԳԻՏՈՒ-
» ԹԵԱՆԷ ԽՐԱՏԷ ՈՒՍԱՆԻԼ, և 'ի տուէ և 'ի գիշերի, զա-
» մենայն ժամանակս կենաց՝ ընթերցման Սուրբ Գրոց
» պարապել, և մեծապէս յանդիմանէ զհեղգացե-
» ալսն յընթերցմանէ (Սուրբ Գրոց՝) որք ասեն, թէ
» չեն ինչ կարիք ընթերցմանն Գրոց Սրբոց: (Սարգիս
» Շնորհ. Մեկն. կաթող.) »:

Դարձեալ, « Գլխաւոր երկու ինչ են հարկաւոր
» Քրիստոնէի՝ ճշմարիտ հաւատք և բարի գործք:
» . . . . : Գլխաւոր մասունք հաւատոյ են երկու.
» Հաւատալ յԱստուած և Հաւատալ բանիցն Աս-
» տուծոյ. Հաւատալն յԱստուած՝ է դաւանել զմի
» Աստուածութիւն յերիս անձինս, 'ի Հայր և յՈր-
» դի և 'ի Սուրբ Հոգին, և զՈրդին Աստուած
» մարմնացեալ, չարչարեալ, մեռեալ վասն փրկու-
» թեան մարդոյ. Հաւատալն Բանիցն Աստուծոյ՝ է ըն-
» դունել զայն ամենայն; զոր ուսոյց Որդին Աստուծոյ
» Աւետարանական վարդապետութեամբ, և ս. և զոր խօ-
» սեցան օրէնք և մարգարէք և առաքեալք ազդմամբ
» Հոգւոյն սրբոյ, որք պարունակին 'ի Հին և 'ի Նոր
» Կտակարանս և զայս ամենայն ըստ Նիկիական Հանգանա-
» կին առաջի դնէ մեզ 'ի հաւատալ և խոստովանել
» Հանգանակն Լուսաւորչեան՝ Եկեղեցւոյս Հայաս-
» տանեայց (ԼՈՒՍԱՇԱՒԻՂ)»:

Նոյնպէս և Եկեղեցւոյս այս օրուան հայրապետին կբացատրէ և կհաստատէ զանազան՝ Սուրբ Գրոց և հայրապետաց վկայութիւններով, որն որ բաւական կհամարինք մեջ բերել առանց մեր կողմէն այս մասին Եկեղեցւոյ ունեցած վարդապետութեանն վրայ ուրիշ խուզարկութիւններ ընել և ուրիշ վկայութիւններ մեջ բերելու. « Իսկ սոյսպէս Ներսէս

” Շնորհալի հայրապետն մեր գրելով ուսուցանէ
” մեզ. “ Հաւատոյն անուն՝ մի է. բայց կրկին ունի
” զօրութիւն. առաջին դաւանութեան հաւատն,
” որ է խոստովանութիւն ՚ի Սուրբ Երրորդութիւնն՝
” զոր ընկալաւ իւրաքանչիւր ոք յաւազանէն ։ Երկ-
” րորդ՝ հաւատ այն է, որ զինչ՝ զոր Հոգին Սուրբ
” խօսեցաւ ի բերանոյ Մարգարէից և Առաքելոց՝ և եկե-
” ղեցւոյ վարդապետօք, զորս ՚ի Գիրս Սուրբս գրեցին
” չհամարի առասպելս և սուտս (վարդապետօք բա-
” ուէն անոնց գրուածներն ալ Սուրբ Գրոց կարգն
” համկնալու չէ). այլ հաւատայ՝ թէ ճշմարիտ են և
” ուղիղ, այնպէս որպէս թէ աչօք իւրովք տեսանէ
” զամենայն եղեալսն, և զլինելոցն և զոր էնն ”.
” Ընդհանրական ” ։

“ Նաև երկրորդ Սուրբ Եկեղեցին Քրիստոսի
” անսխալ կայ և մնայ միշտ ՚ի բանս հաւատոյ և ՚ի
” կրօնս աստուածպաշտութեան, վասն զի ԱՆՍԽԱԼ
” ԵՒ ՈՒՂԻՂ ԿԱՆՈՆ ՀԱՒԱՏՈՑ ԵՒ ԲԱՐԻ ՎԱՐՈՒՑ ՈՒՆԻ
” ՍՈՒՐԲ ԳԻՐՔԵՐԸ և քններ է և կը քննէ միշտ Սուրբ
” Գրոց խօսքերը ուղիղ և հաւատարիմ բացատրու-
” թեամբ և ողջամիտ վարդապետութեամբ. ըստ
” այնմ, “ Քննեցէք զԳիրս, զի դուք համարիք նոքօք
” ունել զկեանսն յաւիտենականս, և նոքին իսկ են՝
” որ վկայեն վասն իմ ”, Յով. Ե. 39 ։ Նաև Պօղոս գրե-
” լով առ Տիմոթէոս աշակերտն իւր յայտնի կընէ՝
” Սուրբ Գիրքը, որ իրեն ԿԱՆՈՆ ՀԱՒԱՏՈՑ է, միշտ իր
” առաջը ունենայ և անոնցմով իմաստուն ըլլայ, և
” անոնց վրայով ողջամիտ վարդապետութիւն ունե-
” նայ և քարոզէ հաւատացելոց ։ Նաև մոլորեալներէն
” և մոլորեցուցիչներէն զգուշանայ, և զգուշացնէ
” հաւատացեալները, ըստ այնմ՝ ։ “ Այլ մարդք չարք
” և կախարդք յառաջ եկեսցեն ՚ի չար անդր. մոլո-
” րեալք և մոլորեցուցանիցեն ։ Այլ դու հաստա-
” տուն կաց՝ յոր ուսար, և հաւատարիմ եղեր

» գիտես ուստի ուսար, զի 'ի մանկութենէ զԳիրս
» Սուրբս գիտես, որ կարողէն իմաստուն առնել զքեզ 'ի
» փրկութիւն 'ի ձեռն հաւատոյն՝ որ 'ի Քրիստոս Յի-
» սուս: Ամենայն Գիրք Աստուածաշունչ և օգտակարք
» 'ի ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ են, և ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ և
» յՈՒՂՂՈՒԹԻՒՆ և 'ի ԽՐԱՏ ԱՐԴԱՐՈՒԹԵԱՆ, զի կատար-
» եալ իցէ մարդն Աստուծոյ յամենայն գործս բա-
» րութեան հաստատեալ.» Բ. Տիմ. Գ. 13:

« Այնպէս և Պետրոս Սրբազան Առաքեալը կը գրէ
» հաւատացելոց որ միտքերնին տան Սուրբ Գրքերուն,
» և յիշեն Աստուծոյ Յիսուսի Քրիստոսի պատգամները՝ հրա-
» մանները, որ խօսեցաւ Մարգարէներուն և Առաքեալներուն
» բերնովը, և չըլլայ որ աղանդաւոր մոլորեալներուն
» հետեւին, որ պիտի արհամարհեն այն Սուրբ Գիր-
» քերուն խօսքերը, ու ծաղր պիտի ընեն իրենց մարմ-
» նաւորութեան ցանկութեանը հետեւելով. ըստ
» այնմ, « Զայս ձեզ սիրելիք երկրորդ թուղթ գրեմ,
» որով զարթուցից 'ի յիշատակ զհաստատուն միտս
» ձեր. յիշել զյառաջագոյն ասացեալ պատգամս 'ի
» սրբոց Մարգարէից և յԱռաքելոցն ձերոց, զպատ-
» ուէրս տեառն և Փրկչին: Բայց զայս նախ գիտա-
» ջիք, զի յաւուրս յետինս եկեսցեն արհամարհողք՝
» այպանողք, որ ըստ իւրեանց ցանկութեանցն գնաս-
» ցեն ». Բ. Պետ. Գ. 1:

» Նա սուրբն Կիւրեղ Երուսաղէմի հայրապետն
» քարոզեց այս՝ սուրբ Եկեղեցւոյ ունեցած անսխալ
» հաւատոյ ճշմարտութիւնը (Սուրբ Գրոց ԿԱՆՈՆ
» ՀԱՒԱՏՈՑ ըլլալը) հաստատուած Սուրբ Գրքովը,
» յասելն. « Նա ստացիր դու զհաւատս ուսմամբ և
» պատմութեամբ, և պահեա դու միայն զայն հա-
» ւատս, որ 'ի սուրբ եկեղեցւոյ աստ վարդապետե-
» ալ, որ յամենայն Գրոց Սրբոց հաստատեալ է . . .
» զի ոչ եթէ որպէս մարդկան հաճոյ թուէր, եղա-
» հաւատոցս հաստատութիւն, այլ յամենայն Գրոց

» զազգի ազգի բանս ժողովեալ 'ի մի վարդապետու-
» թիւն կատարին » Կոչ. Ընդ. Ճառ Ի »։

« Այս մեօք սուրբ Գրիգոր Լուսաւորիչն մեր » քարոզելով՝ յայտնի կընէր մեզի, որ Աստծոյ Գրոց » վկայութիւնները հաստատուն ԿԱՆՈՆ ՀԱՒԱՏՈՑ ու- » նենամք, և հեռի մնամք հաւատքէ մոլորեցուցա- » նող խնդիրներէն և խօսքերէն. « Աշխել և խոր- » հել և առնել զայն՝ որ 'ի հաճոյս Աստուծոյ աւար- » տի ճշմարիտ վկայութեամբ Աստծոյ Գրոց. և մի ան- » կանել 'ի բազմախոյզ խնդիրս՝ որք վրիպեցուցանեն » 'ի սուրբ հաւատոց։ Զի ճշմարիտ գիտութիւնն՝ » իմաստութեան կենարար շահից լցուցանէ միշտ, որ ամ- » րացեալ պահպանութեամբ պատուիրանին 'ի հա- » գեւ որ վարդապետութենէն կայ մնայ անսասանելի »։ » Յաճախ. Ճառ Դ »։

« Արդ՝ ուղղափառ Քրիստոնեաներուն միա- » բանեալ ուղիղ դաւանութեամբ հաւատոյ և հա- » ղորդակցութեամբ սրբարար խորհրդոց և աստ- » ուածպաշտութեամբ, կրօնից համախուսք ժո- » ղովք, որ ունի ամենատէր և ամենափրկիչ Յիսուս » Քրիստոսը՝ Ընդհանրական Գլուխ, իրաւամբ է » Եկեղեցի Քրիստոսի. բայց ըստ որում առանձին » տեղական մարդիկ են, հարկաւ առանձին առան- » ձին լոկ մարդկային խորհրդով և դատմամբ կը սխա- » լին. Իսկ Հոգին Սուրբ Աստուածը անձնաւոր ճշմարիտ և » անսխալ խորհրդատու՝ և ուսուցիչ և առաջնորդ, նա և » ՍՈՒՐԲ ԳԻՐՔԵՐԸ ԱՆՍԽԱԼ ԿԱՆՈՆ ՀԱՒԱՏՈՑ ԵՒ ԲԱՐԻ- » ՎԱՐՈՒՑ, ողջամիտ վարդապետութեամբ հետևե- » լովն հեղինակութեան նոցին՝ անսխալ է հանապազ » Եկեղեցին Քրիստոսի. և այս սուրբ եկեղեցւոյն » անսխալ հեղինակութեանը և ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹԵԱՆԸ » արտաքոյ մնացողները չունին հասանել փրկու- » թեան. ահա այս է որ կըսուի, « Արտաքոյ Եկե- » ղեցւոյ չիք փրկութիւն ». և այս բանը մանաւո-

» բաղկէ ընաւ մէկ ազգի մը ուղղափառ եկեղեցի
» իրեն վրայ չկարէր յառկացուցանել. վասն զի ամեն
» մէկ ուղղափառ ազգաց եկեղեցին մասնաւոր մաս-
» նաւոր բարոյական անդամք և մարմին Քրիստոսի
» են, ըստ այնմ, «Այլ դուք մարմին Քրիստոսի էք՝
» և անդամք յանդամոց նորա. Ա. Կոր. ԺԲ. 27».
» (ՀԱՆԴԻՍԱՐԱՆ): «Տեսէք որպիսի Գրով Գրեցի առ
» ձեզ իմով ձեռամբ . . . . և որ միանգամ ԱՅՍՄ
» ԿԱՆՈՆԻ միաբան լինին, խաղաղութիւն 'ի վերայ
» նոցա և ողորմութիւն . . . . այսուհետև աշխատ
» ոք զիս մի արասցէ». (ԳԱՂԱՏ. Զ. 11. 16. 17):

Բոլոր այս սկզբանցս՝ այս է Սուրբ Գրոց կանո-նականութեանն վրայ կկայանայ Հայոց Եկեղեցւոյն հաւատացածն ու հաւատալիքներն, ունեցածն և ու-նենալիքներն. ասկէ դուրս կամ հակառակ կամ պա-կաս բան չունի և չընդունիր. չէ հաւատացած ու չի հաւատար. հաւատք ըսելով ինչ որ կհաւանայ և ունի, ամենն՝ աս սկզբանս համաձայն է. ով հաւատք անունով աս սկզբանցս վրայ բան աւելցնէ՝ Աւելորդա-պաշտ կըսուի, և ով պակաս կամ նախկէն Ընդհանուր Եկեղեցիէն տարբեր հաւատայ՝ Հերձ-ածող, Հերետի-կոս: Ահա այս է աս կէտին վրայ Հայոց Եկեղեցւոյն հաւատքն. Անգղիական եկեղեցին աս բաներս ինտոր կհաւանայ և իրենք ինտոր, իրարու համաձայն են մի. քանի որ մեր հաւատքն այս է՝ ինտոր մեզի դէմ եղած կըլլան և իրենց մէջն միաբան: Կարծեմ ասով ալ չկրցան մեզի դէմ միաբանութիւննին հաստա-տել. կարծեմ մեզի դէմ ելլելու համար զիրենք ի-րար կապել ուզած աս վերջին շղթայնին ալ փրցու-ցինք. խեղճ վիճակ:

ՅԻՇԵԱԼ երկու յօդուածներնէս մէջ բերած կէտերնուն վրայ այսչափ քննութիւննիս և հերքու-մնիս բաւական համարելով, իրենց՝ մեր այն յօդ-

ուածներէն բնաւ մէջ չբերած, չյիշած կամ տեսնել չուզած կէտերուն և առարկութիւններուն համար, յիշեալ երկու յօդուածներնիս ալ նորէն կարդալ կառաջարկենք, մենք հոս երկրորդելով խօսքերնիս երկնցնել չենք ուզեր. իսկ յիշեալ երկու յօդուածներնուս բուն նպատակներուն համար, որոնց վրայ բոլորովին լռած են, կամ՛ այո՛ կամ՛ ոչ՛ կտրողական պատասխան մը չեն տուած՝ նորէն կառաջարկենք ու կպնդենք, այն է Մեծ և Նարեկոր յայփարարութեան յաւելեալ օրինակին էբրեւ բառն բնագիրներէն ընդօրինակել, և Լատինական Միլտոնի Մեծ ոտանաւորին փոխադրել. մինչև որ ասոնք չորոշուի՝ խօսակիցներն երկկողմնակի չեն կրնար հասկցուիլ և նոր առարկութիւն ապօրինաւոր կհամարինք։

Ամերիկացի քարոզչաց խօսած կերպերնէն և բռնած ոճերնէն կերևի որ Հայերն Պապական կարծած ըլլան, զոր չենք կարծեր. զի այդչափ տգէտ ըլլալու չեն. վասն զի Եւրոպայի մէջ ինչ ընթացք որ բռնուած է Պապին դէմ, ասոնք ալ ելեր հոս մեզի դէմ նոյնն կբռնեն, և ինչ առարկութիւններ որ անոր դէմ եղած են, ասոնք ալ մեզի դէմ նոյնն ընելու են, ելեր. ոչ ըսածնին գիտեն, ոչ ըրածնին։ Ամերիկացի քարոզիչներն Անգղիականներէն և Եպիսկոպոսականներէն որչափ հեռու են նէ Պապերն ալ Հայերէն այնչափ հեռու են. ուստի թէ որ Պապերն Հայերուն հետ կրնան համարուիլ նէ, Ամերիկացի քարոզիչներն ալ Անգղիականաց և ուրիշ Եպիսկոպոսականաց հետ կրնան համարուիլ, և այն ժամանակն միայն իննսուն միլիոնի միաբանութիւնն մեզի դէմ կրնան յիշել։ Ամերիկացւոց աշխարհիս զանազան կողմերն թափած ծիգերնին քննելով՝ Հայոց, Յունաց, Պապականաց, Անգղիականաց և ուրիշ Եպիսկոպոսականաց համար միևնոյն կգտնենք. այսինքն, Հայերն, Յոյներն և Պապա-

կաններն իրենց սկզբանցն բերելու ինչ ջանք ունին նէ՝ նոյնն ունին նաև Անգղիականաց և այլ եպիսկոպոսականաց համար. Անգղիականաց և եպիսկոպոսականաց մէջ ալ նորէ նոր արթնութեան և լուսաւորութեան լուրեր կհրատարակեն. խիստ շատ անգամ ու խիստ շատ պարագայներու մէջ իրենք խոստովանած են որ, Անգղիականք և ուրիշ եպիսկոպոսականք ալ միւսներուն պէս դուրս են իրենց կարծած ճշմարիտ եկեղեցիէն. ինչպէս կըլլայ որ հիմայ իննսուն միլիոնէ միաբանութեան մի մէջ ըլլան. ասոնք միամիտներ խաբելու համար հնարուած ստութիւններ չե՞ն նէ՝ ալ ինչ են . . . ։

Արդարև եթէ առհասարակ Բողոքական ըսուած այսինքն հնգետասաներորդ դարէն ետև Պապին լուծն թօթուած և անոր ապօրինաւոր իշխանութիւնն ու պահանջմունքներն չճանչցող ազգաց և եկեղեցեաց մէջ միաբանութեան կէտ մի կայ նէ ուրիշ բանի վրայ չի կայանար, բայց միայն Պապերուն գերիշխանութիւնն և անոր նպաստաւոր անոնց հնարած վարդապետութիւններն չճանչնալու վրայ է. ասկէ զատ մենք ուրիշ միաբանութիւն մի չենք տեսնար իրենց մէջ, որ միաբանութեանն մէջ որ եթէ ուզեն՝ մեզի ալ կրնային յիշել, ուսկի կառնեն կոր Անգղիականներն և ուրիշ Եպիսկոպոսականներն առնուլ ու մեզ թողուլ. աս դրութեամբ եթէ Հայերն Պապական պիտի կոչեն չենք ընդունիր. ուստի իննսուն միլիոնի միաբանութիւննին Պապին դէմ կրնան յիշել իբրև հնգետասաներորդ դարէն ետև անոր լուծն թօթուողներ, բայց մեզի դէմ ոչ երբէք։ Թէ որ դարձեալ պնդեն թէ ասկէ զատ ամեն բանի մէջ ալ միաբանութիւն ունինք և զերար ուղիղ շաւղաց մէջ կճանչնանք, և թէ կըսենք, յաման ին ու պնդեն թէ կամքն մերն չէ՞ մի, Անգղիականներն և Եպիսկոպոսականներն մեզի հետ մէկ

կճանչնանք և ուրիշներուն կհաստատէինք, այն ժա-
մանակին կպարտաւորէինք Անգղիականաց և ուրիշ
Եպիսկոպոսականաց հարցունել թէ, անոնք ալ Ամե-
րիկացիներն կընդունի՞ն և իրենց հետ մէկ կճանչնա՞ն
մի, որուն ընդունելիք պատասխաննիս նոյն իսկ
իրենց ալ յայտնի է. . . . :

Պապին գերիշխանութիւնն եթէ սխալ և եռա-
քէն հնարուած պահանջմունք մի է և իրենք ճանչ-
ցեր ու թողուցեր են, Հայոց եկեղեցին ոչ ճանչ-
ցած է, ոչ թողուցած. թող որ Անգղիական եկե-
ղեցին իր ընթացքն ընդհանուր եկեղեցւոյ առջին
արդարացնելու, այսինքն, Մէ, Սուրբ, Կաթուղիկէ
և Առաքելական Եկեղեցւոյ մէջ այսպիսի քանակա-
լութիւն մի ճանչնալու իրաւունք մի կամ պարտք մի
չունենալնին և Պապին չճանչնալովնին հերձուածող
չըլլալնին՝ փաստացուցանելու համար արեւելքի Հայոց
և Յունաց եկեղեցիներէն հիմք և օրինակ կառնուն
և կըսեն թէ, « Այսօր Անգղիական Եկեղեցին այն-
» չափ ուղղափառ է՝ որչափ որ Արեւելքի Հայերն և
» Յոյներն, քանի որ մենք ալ այն նախնի առաքելա-
» կան եկեղեցիներուն շաւղացն ենք հետեւած և
» ամէն բան անոնց ընդունածին պէս կընդունինք » :
Թող կարդան Անգղիական եկեղեցւոյ կողմէն հրա-
տարակուած անգղիերէն Փոփըլ Սուփրէմասի Թեսթըտ բայ
Անթիգուիթի (Գերիշխանութեան Պապին հերքումն
ի նախնեաց) կամ դաղղիերէն Լ՚Էկլիզ Անկլիգան Նէ
Բուան Շիզմաթիք (Անգղիական Եկեղեցւոյ հերձուածող
չըլլալն) անուն գրքերն, որ Անգղիական Եկեղեցւոյ
բոլոր նախնի աստուածաբաններուն գրուածներէն
ժողվուած և արդի ամէն աստուածաբաններուն և
ամէն Լորտ-եպիսկոպոսներուն (Արքեպիսկոպոս) և
Եպիսկոպոսներուն անօրինութեամբն դեռ անցեալ
տարի հրատարակուած գործեր են, հեղինակու-
թեամբ աստուածաբանութեան դասատուի Օքս-

Ֆրանսի անուամբ արքունական համալսարանին։

Նոյն՝ Անգղիական և ուրիշ Եպիսկոպոսական Եկեղեցիներն ևս իրենց հետ կրնան համարուիլ, բայց միայն Պապին գերիշխանութիւնն չճանչնալու մասին, ինչպէս մեզի հետ ալ. բայց իրենց հոգևորականներ, իրենց բնաւ եկեղեցական դրութիւն մը չճանչնալնուն մասին, առա-քեալներուն օրէն մինչև ցայսօր բոլոր Ընդհանուր Եկեղեցին պահ-պանած ու մոլորած է ըսել, ամէն բան հիմն 'ի վեր տա-պալեցին և նոյն իսկ առաքելոց գրուածներն անոնց գրած և հասկցածին պէս չհասկնալով, անոնց միտքերն իրենց ուզածնուն պէս կամակորելնուն մասին, ինչպէս որ է նաև Հայոց Եկե-ղեցին։ Այս բաներն Ամերիկացիք չեն գիտեր կամ չեն կրնար ստուգել չենք կրնար ըսել, Անգղիա իրենց մենէ մօտ է. խաբուած չեն կրնար ըլլալ. դիտութեամբ ալ այս սատրճան սուտ խօսիլ կըլլա՞յ մի. այս բաներն ինչո՞ւ չեն յայտներ։ Արդեն թէ Անգղիական եկեղեցին և ուրիշ եպիսկոպոսական եկեղեցիներն կճանչնանք և կընդունինք, և իրօք ալ քննութեան մէկ աշխարհահամաժողովին մէջ ատած են մեծ երևնալու համար, եթէ լոկ Թուական ընդու-նելութեան մը է բառծնելին. իսկ եթէ սկզբանց ըն-դունելութիւն՝ այս մեզի ինչո՞ւ պէտ էն. ահա մեզի ինչ կէտերու վրայ պէտ էն նէ նոյն կէտերն Անգղիական և ուրիշ եպիսկոպոսական եկեղեցինե-րուն մէջն ալ նոյն ըլլալն բաւական ցուցուցինք։ Ար-կծնայ իրենց, կամ Անգղիական և ուրիշ եկեղեցի-ներուն ալ միութենէն քակուիլ ու ձիգը թիւերնին խոստովանիլ և քննութեան մէկ մեծ առուտրնին իբրև ատտանայական մեծ սուտ մը ընդունիլ, կամ Հայոց դէմ ըլլալէ դադրիլ։ Բայց բանն ատանկ չէ Անգ-ղիական Եկեղեցին զառանք չընդունիր. բառծնելն սուտ է, իրենց նպատակին ծառայելու համար չին-ուած պատրուակ ու սուտ թիւն է, և այս բաներս իրենց բերնովն ամէնեքին յայտնել ու խոստովանիլ

չըլլար։ Բայց մենք հոս այս մասին Անգղիական եկեղեցւոյ կարծիքն մէջ բերենք անոր մէկ երևելի եպիսկոպոսին վկայութեանն համեմատ։

“ Անկլիքան Եկեղեցին Առաքելաշաւիղ Պաշտօնէ-
” աներ ունի. այսինքն՝ Եպիսկոպոսութեան, Քա-
” հանայութեան, և Սարկաւագութեան երեք Սրբա-
” զան կարգերն ալ ունի, և սոնք կանոնաւոր յա-
” ջորդութեամբ Առաքեալներէն իջած ըլլալով ”։

“ Եկեղեցւոյ գլուխը (Քենթէրպըրիի Արքե-
” պիսկոպոսը) կը ձեռնադրէ Եպիսկոպոսը՝ գոնէ ուրիշ
” երկու Եպիսկոպոսներու օգնականութեամբ՝ Նի-
” կիոյ ժողովքին կանոնին սահմանադրածին պէս ”։

“ Քահանաները և Սարկաւագները Եպիսկո-
” պոսներէ կը ձեռնադրուին. և այս Եկեղեցւոյս մէջ
” այս կերպով չը ձեռնադրուած Քահանայն ու Սար-
” կաւագը օրինաւոր չի սեպուիր ”։

“ Ամեն Քահանայ և Սարկաւագ իր առած
” կարգը Առաքեալներէն ընդունած կը սեպէ իր Եպիս-
” կոպոսին միջնորդութեամբը ”։

“ Անկլիքան Եկեղեցիին մէջ ուրիշ պաշտօնեայ-
” ներ ալ կան, ինչպէս որ ուրիշ բոլոր Քրիստոնեայ
” Եկեղեցիներուն մէջ ալ կան. բայց Եպիսկոպոսու-
” թեան, Քահանայութեան և Սարկաւագութեան
” Սրբազան Կարգերը ունենալէն ետքը, ալ ուրիշ
” բանի վրայ խօսիլը աւելորդ է ”։

“ Ուստի Անկլիքան Եկեղեցին Վաւերական, Ա-
” ռաքելական, և Կաթուղիկէ Պաշտօնեաներ ունի ”։

“ Երկրորդ հարկաւոր խնդիրը՝ Անկլիքան Եկե-
” ղեցւոյն “ Հաւատքն է ”։

“ Այս Եկեղեցին՝ Նիկիոյ և Կոստանդնուպօլ-
” սոյ մէջ սահմանուած Հանգանակը կ'ընդունի. և
” ան ատենէն կընդունի, երբ որ Քրիստոսէն 325.
” և 381 տարի ետքը եղան այն Սինհոդները յիշ-
” եալ քաղաքներուն մէջ, որ հասարակօրէն կըսուի

» Հանգանակ Նիկիոյ » ։

“ Այս հանգանակը ամեն օր մեր Եկեղեցիներուն » մէջ կարդացուիլ սահմանուած է » ։

“ Բայց անոր մէկ մասը Արեւելեան Եկեղեց- » ւոյ Հանգանակէն կը տարբերի՝ Անկլիքան Եկեղե- » ցին Հոգւոյն Սրբոյ Ելումը ’ի Հօրէ եւ յՈրդւոյ » խոստովանելուն համար » ։

“ Սակայն չի պարսաւեր զԱրեւելեան Եկեղե- » ցին, որ այս խօսքերը չունի, ու “ Եւ յՈրդւոյ » » չի գործածեր իր հանգանակին մէջ » ։

“ Ընդհակառակն Անկլիքան Եկեղեցւոյն պինտ » ընտիր Աստուածաբանները կը խոստովանին, թէ՝ » այն մեծ ժողովքներով հաստատուած Հանգանակին » մէջ այս բառերը չկան » ։

“ Նոյն բառերը եօթներորդ դարուն՝ Արեւմտեան » Եկեղեցիին մէջ մտան՝ այն Եկեղեցւոյն հանգա- » մանացը նայելով հարկաւոր սեպուելուն համար » ։

“ Բայց մենք մեր Արեւելեան եղբայրները չենք » մեղադրեր՝ նոյն բառերը չունենալնուն համար. եւ » ճինչպէս կրնանք մեղադրել զանոնք, երբ որ սկիզ- » բէն յօրինուած Հանգանակը անպակաս ունին ։ » Ասկից մեզի կուգայ թէ՝ նոյն բառերուն համար » մեր մէջը երեւելի տարբերութիւն մը կայ. վասն » զի մենք կը հաւատանք Սուրբ Գրոց, որ Սուրբ » Հոգւոյն “ ՚ի Հօրէ բղխիլը » կը վկայեն, եւ “ Որդ- » ւոյն ձեռքովը » ղրկուիլը, ինչպէս որ Յովհաննէս » Աւետարանիչ կը զրուցէ ։ (ԺԵ. 26) ։ Մենք միայն » սա մոքերով կըսենք թէ՝ ՚ի Հօրէ կը բղխի, մէյ մը » որ՝ “ Հոգի Քրիստոսի » ըսուելուն համար ։ (Գա- » ղատ. Դ. 6 Եւ Ա. Պետր. Ա. 11) ։ Մէյ մըն ալ » որ՝ “ Քրիստոսէ կելլէ » ըսուած ըլլալուն համար ։ » (Յովհ. ԺԶ. 7) ։ Ու մէյ մ’ալ, “ Քրիստոսէ կառ- » նէ ըսուելուն համար, (Յովհ. ԺԶ. 14) ։ Չէ նէ » չիտակը՝ այս բաներուն վրայօք վէճ ընելու ուրիշ

» պատճառ մի չկայ » ։

« Անգղիական Եկեղեցին խնդալեօ որ կընդունի Նի-
» կիոյ Հանգանակը, անանկ ալ անոր մէջի Քրիստո-
» նէութեան գլխաւոր Աստուածաբանութիւններն ալ
» կը խոստովանի՝ կը գրկէ՝ և կը սիրէ, այսինքն՝ Ամենա-
» սուրբ Երրորդութեան Հօր և Որդւոյ և Սուրբ
» Հոգւոյն վարդապետութիւնը, Քրիստոսի վերա-
» բերեալ վարդապետութիւնները, անոր երկու
» բնութիւնը՝ մէկ Անձամբ անբաժանելի միացած,
» Հօր Աստուծոյ հետ ունեցած Համագոյութիւնը,
» և անոր՝ Սուրբ Հոգւով Յղանալուն վերաբեր-
» եալ այն ամենամեծ Ճշմարտութիւնը, անոր՝ Ամենա-
» օրհնեալ Կուսէն ծնանիլը, անոր չարչարանքները,
» մահը, յարութիւնը, համբարձումը, Հօր Աս-
» տուծոյ աջ կողմը նստիլը, և աշխարհս դատելու
» համար միւսանգամ գալուստը » ։

« Կընդունի նա Հոգւոյն Սրբոյ վարդապետու-
» թիւնը, մէկ կաթուղիկէ և առաքելական Եկե-
» ղեցի մը, մեղաց թողութեան համար մէկ Մկրտու-
» թիւն մը, մեռելներուն յարութիւնը, և հան-
» դերձեալ կեանքը » ։

« Այս ուրեմն Անգղիական Եկեղեցին Առաքելա-
» կան յաջորդութեամբ՝ ճշմարիտ նախկին և կա-
» թուղիկէ Հաւատքը ունի, և սկիզբէն 'ի վեր
» բռնած է » ։

« Հիմայ գանք անոր արարողութեանցը և Ծէ-
» սերուն վրայօք խօսելու ։

« Քրիստոսի սահմանադրած Մկրտութեան և
» Ամենասուրբ Հաղորդութեան խորհուրդները ա-
» մենայն յարգութեամբ կընդունի ու կը պահէ Անգ-
» ղիական Եկեղեցին ։ Մկրտութեան խորհուրդը տղայոց
» կը մատակարարէ, և սոփկայ՝ որչափ որ կարելի է,
» անոնց ծնանելէն քիչ մը ժամանակ ետքը կըլլայ ։
» Կանոնը աս է, որ՝ անոնց ծնանելէն մէկ երկու կի-

» բանկի տոքը ․ կամ անոնց մէջ պատահած տօնախըմ-
» բութեան օր մը Անգլուք տղան՝ թէ որ կարելի է »։

« Ջուրով, Խաչին նշանաւ, և Ամենասուրբ
» Երրորդութեան Անուամբը կը մկրտէ զերախայն ․
» և Անգլիքան Եկեղեցւոյն դաւանութիւնը այս է
» որ՝ Մկրտութեամբ տղան Քրիստոսի Եկեղեցւոյն
» անդամ կըլլայ, և Որդեգիր Աստուծոյ »։

« Անգլիքան Եկեղեցւոյն մէջ միայն Եպիսկոպոսը
» կամ Քահանայն կրնայ մատակարարել Ամենասուրբ
» Հաղորդութեան խորհուրդը »։

« Անգլիքան Եկեղեցին կը խոստովանի թէ՝ ճշմա-
» րիտ Քրիստոնեայները այս խորհրդին մէջ Քրիս-
» տոսի Մարմինը և Արիւնը ճշմարտապէս կը ճաշա-
» կեն, ու կուտեն ․ սակայն չարագործութեամբ ան-
» արժանները՝ թէև մարմնապէս և համարձակ կու-
» տեն ու կը խմեն Քրիստոսի Մարմինը և Արիւնը ․
» բայց Քրիստոսի մասնակից չեն ըլլար ․ հապա եկերոք
» իրենց դատապարտութիւնը կուտեն ու կխմեն »։

« Անգլիքան Եկեղեցւոյ մէջ թէ Հացը և թէ
» Գինին ժողովուրդին կը տրուի՝ Փրկչին սահմանադ-
» րածին նման ․ սակայն նոյն խորհուրդը չի մատակա-
» րարվիր՝ մինչև որ Քահանայէն զատ գոնէ երկու
» կամ երեք հոգի չգտնուին »։

« Եկեղեցիներուն ոմանց մէջ ժողովուրդը ամիսը
» անգամ մը կառնէ, ոմանց մէջ ալ առաւել յա-
» ճախակի ․ և ոմանց մէջ ոչ այնքան ստէպ ։ Բայց
» ընդհանրապէս ամեն մարդ պարտաւոր է՝ գոնէ
» Ծննդեան, Զատկի, և Հոգեգալստեան երեւելի
» օրերը առնելու »։

« Անգլիքան Եկեղեցին՝ մեր Փրկչին Ամենասուրբ
» Մարմնոյ և Արեան խորհուրդը միշտ յաճախակի
» ընդունելու համար եւելոք յորդոր և իրախոյս
» կուտայ ժողովուրդին »։

« Դրոշմի Արքայական Արարողութիւնը Անգլու-

» թենէն ետքը կըլլայ, բայց չէ թէ անմիջապէս ·
» այլ որ ժամանակ որ տղան խելահաս ըլլայ, ու-
» պատրաստուի անձամբ հաստատելու այն ուխտերը ·
» որ Մկրտուած ժամանակը կնքահայրները ըրած են
» իրեն համար » ։

« Այս խորհուրդը միշտ Եպիսկոպոս մը կը կատա-
» րէ՝ ձեռքը անոր վրայ դնելով, և անոր համար ա-
» ղօթք ընելով ։ Սովորութիւնը աս է որ՝ մէկը դրոշ-
» մուելէն ետքը Հաղորդութիւն առնելու ազատ է » ։

« Անկլիքան Եկեղեցին « Արձակման » համար
» կհաւատայ թէ՝ Քահանայն իշխանութիւն և հրա-
» ման ունի Աստուծմէ՝ զղջացողներուն մեղացը թո-
» ղութիւն զրուցելու և կամ հրատարակելու ·
» բայց այս զօրութիւնը իբր իր կողմանէ 'ի գործ
» դնելու չէ, հապա Քրիստոսի իբր մէկ փոխանոր-
» դը, և Արձակումը ամենեւին մէկ զօրութիւն
» մը չունի՝ երբոր ընդունողը անզեղջ ըլլայ, և Քրիս-
» տոսի վրայ ճշմարիտ ու անկեղծ հաւատք մը չու-
» նենայ » ։

« Անկլիքան Եկեղեցին Աղօթամատոյց մը կը գոր-
» ծածէ ընդհանուր պաշտամանց համար ։ Ամեն առ-
» տու և իրիկուն ժամերգութիւն ունի, նաև բոլոր
» կիրակի և ուրիշ Տօնախմբութեան օրերը » ։

« Աստուածային պաշտամունքներ և արարողու-
» թիւններ սահմանած է Ամենասուրբ Հաղորդու-
» թեան համար, Մկրտութեան, Դրոշմի, Ամուս-
» նութեան պսակի, Հիւանդի այցելութեան, Հի-
» ւանդի Հաղորդութեան, Թաղման, Կանանց որ-
» դեծնութենէն ետքը գոհութեան, Եպիսկոպոսա-
» ներու՝ Քահանաներու՝ և Սարկաւագներու Օրհ-
» նութեան և Ձեռնադրութեան, Եկեղեցի Օրհ-
» նելու, և ուրիշ Քրիստոնէական Արարողութիւն-
» ներու ու Տօներու համար ։ Բոլոր տարւոյն ամեն
» օրական ժամերգութեանցը մէջ Հին և Նոր Կտա-

» կարանք կարդացունել կուտայ՝ ամեն օրուան հա-
» մար զատ զատ բաժնուած . նոյնպէս Դաւթի Սաղ-
» մոսները ամեն ամիս ամբողջ կը կարդացուի » :

« Իր Աստուածային պաշտամանցը մէջ կան Եր-
» գեր , Դոհութիւններ և Աղօթքներ » :

« Եպիսկոպոսները Քահանայները և Սարկաւագ-
» ները յատուկ Եկեղեցական Զգեստներ կը հագ-
» նին՝ ժամերգութեան պաշտօն վարած ատենին » :

« Անգլիքան Եկեղեցին Տօնախմբութեան և
» Պահք օրեր ալ ունի » :

« Տէրոջը օրէն 'ի զատ իրեն տօնախմբութեան
» օրերը ասոնք են : Ծնունդ Տեառն մերոյ , և անոր
» Թլփատութիւնը , Յայտնութիւն , Յարութիւն՝
» որ երեք օր է , Համբարձումն , Հոգեգալուստ՝
» որ երեք օր է , Աւետումն Ամենօրհնեալ Կուսին ,
» և անոր Տաճարը Ընծայուիլը , Ծնունդ Յովհան-
» նու Մկրտչի , Տօն Սրբոյն Պետրոսի , Սրբոյն Յա-
» կոբայ մեծին , Սրբոյն Յովհաննու Աւետարանչի ,
» Ս . Մատթէոսի , Ս . Մարկոսի , Սրբոյն Ղուկա-
» սու , Սրբոյն Փիլիպպոսի , և Ս . Յակոբայ փոքու ,
» Ս . Անդրէասայ , Ս . Թովմասայ . Ս . Բարթուղի-
» մէոսի , Ս . Սիմօնի , և Ս . Յուդայի , Ս . Մատա-
» թիայի , Ս . Պօղոսի , Ս . Բառնաբայ , Ս . Ստե-
» փաննոսի , Անմեղ Մանկանց Բեթլեհէմի , և Սրբոյն
» Միքայէլի Հրեշտակապետին , և բոլոր Հրեշտա-
» կաց , և տօն ամենայն Սրբոց » :

« Ասանկով Անգլիքան Եկեղեցին՝ Կիրակիէն 'ի
» զատ , որ սկիզբէն հետէ միշտ՝ Սուրբ կը պահուի ,
» երսունումէկ Տօնախմբութեան օր ունի » :

« Կիրակիներուն մէջ՝ Հոգեգալուստէն ետքը
» առաջին Կիրակին երևելի է , որ ան օրը Տօն Ա-
» մենասուրբ Երրորդութեան կը յիշատակուի » :

« Նաև անմիջապէս Ծննդեան նախընթաց չորս
» Կիրակիները՝ իրենց մէջի եղած շաբաթներովը՝

” պատշաճ ժամանակներ են զգուշաւոր պատրաս-
” տութեան Ծննդեան համար ” ։

“ Անգլիքան Եկեղեցւոյն Պահք օրերը տարւոյն
” բոլոր Ուրբաթ օրերն են, նաեւ Մեծ Պահքը,
” որ Զատկէն առաջ քառասուն օր է, նաև երեք օր
” Պահք՝ Համբարձումէն առաջ։ Այլ և երեք օր
” մասնաւոր Պահք մը՝ Մեծ Պահոց երկրորդ շաբ-
” թուն մէջ. երեք օր Պահք՝ Հոգեգալստեան ե-
” տեւի շաբթուն մէջ. երեք օր Պահք՝ Սեպտեմբերի
” երրորդ շաբթուն մէջ. երեք օր Պահք՝ դեկտեմ-
” բերի երրորդ շաբթուն մէջ ” ։

“ Այս վերջին չորս Պահքերը տարւոյն չորս Ե-
” ղանակներուն համար են, և մասնաւոր կերպով
” մը կը յիշատակուին աղօթքներով Եկեղեցականնե-
” րուն համար՝ հետեւեալ կիրակիները Քահանայ և
” Սարկաւագ ձեռնադրելու որոշեալ ժամակներ ըլ-
” լալուն համար ” ։

“ Այս Եկեղեցին մէկ տարին հարիւր օրի չափ
“ Պահք ունի ” ։

“ Ահա Անգլիքան Եկեղեցւոյն բոլոր հանգա-
” մանքները նկարագրելնուս ետքը, հիմա օգտակար
” կը համարիմք անոր մէջի չեղած բաներն ալ
” պատմել ” ։

“ Քաւարանի վարդապետութիւնը չընդունիր,
” հապա բոլորովին կը հերքէ՝ թէ Սուրբ Գրոց և թէ
” նախկին Հայրապետաց դէմ ըլլալուն համար ” ։

“ Կը հաւատայ թէ՝ Հաւատացեալ ննջեցելոց
” հոգիները խաղաղութեան և հանգստութեան մէջ
” են՝ վերջին օրուան Երանութիւնը կատարելապէս
” վայելելու յուսով ” ։

“ Պատկերներու կամ Արձաններու երկրպագու-
” թիւն չըներ ։ Թէև պատկերներ կը գտնուին իր Ե-
” կեղեցիներուն մէջ, բայց Աստուծոյ տունը զար-
” դարելու միջոցով միայն դրուած կ'ըլլան անոնք, և

» ժողովուրդը ամենուն յարգութիւն մը չեն ըն-
» ծայեր անոնց » ։

« Սուրբերուն աղօթելու սովորութիւնն ալ
» չունի ․ Ճշմարիտ հաւատքով հրաժարուածները
» յարգելու ժամանակը, և անոնց յիշատակութիւ-
» նը՝ թէ Ամենասուրբ Հաղորդութեան Խորհուր-
» դին մէջ, և թէ սահմանուած Տօներուն մէջ կա-
» տարած ատենը, անոնց աղօթք չի մատուցաներ ։

« Աստուծոյ աղօթք ըրած ատենը՝ որ շնորհք տայ
» մեզի անոնց բարի վարքերուն հետեւելու, զանոնք
» սուրբ մարդոց վիճակէն վեր չի բռներ ։ Կը հաւա-
» տայ թէ՝ անոնք մեզի հետ Սուրբ միութեամբ
» եղբայրներ են ․ և այս դիտաւորութեամբ կը յար-
» գէ և կը սիրէ զանոնք » ։

« Անկլիքան Եկեղեցին Ամուսնութիւնը չարգի-
» լեր իր Եկեղեցականներուն, հապա ազատութիւն
» կու տայ ․ որ բոլոր Եպիսկոպոսները, Քահանայ-
» ները, և Սարկաւագները անխտիր այն վիճակին
» մէջ գտնուին, (թէ Ամուսնութեան, և թէ Ան-
» կընութեան), որն որ Աստուածպաշտութեան ե-
» ւելօք կը ծառայէ » ։

« Ասանկ էր հին ատենները Անգղիացւոց Եկե-
» ղեցւոյն մէջ » ։

« Անկլիքան Եկեղեցին՝ Հռոմայի Պապին գլխա-
» ւորութիւնը չի խոստովանիր ․ այլ զանիկայ հին ա-
» թոռներու Հայրապետներուն իբր մէկը կ'ընդու-
» նի՝ Իտալիայի միայն մէկ մասին վրայ առաջուց իշ-
» խանութիւն մը ունենալովը ։ Ուրիշ Եկեղեցինե-
» րու վրայ իշխանութիւն ունենալու իրաւունքը կը
» մերժէ ․ և կը հաւատայ թէ՝ ընդհանուր տիրողու-
» թեան պահանջմունքը՝ թէ Սուրբ Գրոց, և թէ
» նախկին սովորութեան հակառակ է » ։

« Անկլիքան Եկեղեցին՝ մեր Տէր և Փրկիչ Յի-
» սուս Քրիստոսը ընդհանուր Եկեղեցւոյ մի միայն

կճանչնանք և ուրիշներուն կհաւատացնենք, այն ժամանակն կպարտաւորինք Անգղիականաց և ուրիշ Եպիսկոպոսականաց հարցունել թէ, անոնք ալ Ամերիկացիներն կընդունի՞ն և իրենց հետ մէկ կճանչնա՞ն մի, որուն ընդունելիք պատասխաննիս նոյն խակ իրենց ալ յայտնի է . . . :

Պապին գերիշխանութիւնն եթէ սխալ և եռաքէն հնարուած պահանջմունք մի է և իրենք ճանչցեր ու թողուցեր են, Հայոց եկեղեցին ոչ ճանչցած է, ոչ թողուցած. Թող որ Անգղիական եկեղեցին իր ընթացքն ընդհանուր եկեղեցւոյ առջին արդարացնելու, այսինքն, Մէ, Մուրբ, Կաթուղիկէ և Առաքելական Եկեղեցւոյ մէջ այսպիսի քանակութիւն մի ճանչնալու իրաւունք մի կամ պարտք մի չունենալն և Պապն չճանչնալովն հերձուածող չըլլալն՝ ապացուցանելու համար առներլքէ Հայոց և Յունաց եկեղեցիներէն հիմք և օրինակ կառնուն և կըսեն թէ, « Այսօր Անգղիական Եկեղեցին այն»
» չափ ուղղափառ է՝ որչափ որ Արևելքի Հայերն և
» Յոյներն, քանի որ մենք ալ այն նախնի առաքելա-
» կան եկեղեցիներուն շաւղացն ենք հետևած և
» ամէն բան անոնց ընդունածին պէս կընդունինք » :
Թող կարդան Անգղիական եկեղեցւոյ կողմէն հրատարակուած անգղերէն [illegible] (Գերիշխանութեան Պապին հերքումն ՚ի նախնեաց) կամ գաղղիերէն [illegible] (Անգղիական Եկեղեցւոյ հերձուածող չըլլալն) անուն գրքերն, որ Անգղիական Եկեղեցւոյ բոլոր նախնի աստուածաբաններուն գրուածներէն ժողվուած և արդի ամէն աստուածաբաններուն և ամէն Լօրտ–եպիսկոպոսներուն (Արքեպիսկոպոս) և Եպիսկոպոսներուն անօրհնութեամբն դեռ անցեալ տարի հրատարակուած գործեր են, հեղինակութեամբ աստուածաբանութեան դասատուի Օքս-

Քրիստոսի անուանի արքունական համալսարանին։

Սակայն Անգղիական և ուրիշ Եպիսկոպոսական Եկեղեցիներն իրաւ իրենց հետ կրնան համարուիլ, բայց միայն Պապին գերիշխանութիւնն չճանչնալու մասին, ինչպէս մեզի հետ ալ. բայց իրենց հակառակ են, իրենց բնաւ եկեղեցական դրութեան մը չճանչնալուն մասին, առաջնորդներուն օրէն մինչև ցայսօր բոլոր Ընդհանուր Եկեղեցին խանգարուած ու մոլորած է ըսելով, ամեն բան Գրքն ի վեր փաղաքելուն և նոյն իսկ առաքելոց գրուածներն անոնց գրած և հասկցածին պէս չհասկնալով, անոնց միտքերն իրենց ուզածնուն պէս խանգարելնուն մասին, ինչպէս որ է նաև Հայոց Եկեղեցին։ Այս բաներն Ամերիկացիք չեն գիտեր կամ չեն կրնար ստուգել չենք կրնար ըսել, Անգղիա իրենց մենէ մօտ է. խաբուած չեն կրնար ըլլալ. գիտութեամբ ալ այս աստիճան սուտ խօսիլ կըլլա՞յ մի. այս բաներն ինչու չեն յայտներ։ Ըսեն թէ Անգղիական եկեղեցին և ուրիշ եպիսկոպոսական եկեղեցիներն կճանչնանք և կընդունինք, և իրօք ալ ջննուն միլիոնի աշխարհահամարնուն մէջ առած են մեծ երևնալու համար, եթէ լոկ թուական ընդունելութիւն մի է բաւծնելն. իսկ եթէ, սկզբանց ընդունելութիւն՝ այս մեզի ինչու պէտք են. ահա մեզի ինչ կէտերու վրայ պէտք են նէ նոյն կէտերն Անգղիական և ուրիշ եպիսկոպոսական եկեղեցիներուն մէջն ալ նոյն ըլլալն բաւական ցուցուցինք։ Ազկմնայ իրենց, կամ Անգղիական և ուրիշ եկեղեցիներուն ալ միութենէն քաշուիլ ու ձեռք թիւերնին խոստովանիլ և յիսուն միլիոն մեծ պատուերնին իբրև սատանայական մեծ սուտ մի ընդունիլ, կամ Հայոց դէմ ըլլալէ դադրիլ։ Բայց բանին տարանկ չէ Անգղիական Եկեղեցին զասոնք չընդունիր, բաւծնելն սուտ է, իրենց նպատակին ծառայելու համար չեն ուզած պատրուակ ու սուտութիւն է, և այս բաները իրենց բերնովը ամենուն յայտնել ու խոստովանիլ

չըլլար ։ Բայց մենք հոս այս մասին Անգղիական եկեղեցւոյ կարծիքն մէջ բերենք անոր մէկ երևելի եպիսկոպոսին վկայութեանն համեմատ ։

« Անկլիքան Եկեղեցին Առաքելաշաւիղ Պաշտօնէ-
» եայներ ունի . այսինքն՝ Եպիսկոպոսութեան , Քա-
» հանայութեան , և Սարկաւագութեան երեք Սրբա-
» զան կարգերն ալ ունի , և ասոնք կանոնաւոր յա-
» ջորդութեամբ Առաքեալներէն իջած ըլլալով » ։

« Եկեղեցւոյ գլուխը (Քեանթէրպըրրիի Արքե-
» պիսկոպոսը) կը ձեռնադրէ Եպիսկոպոսը՝ գոնէ ուրիշ
» երկու Եպիսկոպոսներու օգնականութեամբ՝ Նի-
» կիոյ ժողովքին կանոնին սահմանադրածին պէս » ։

« Քահանայները և Սարկաւագները Եպիսկո-
» պոսները կը ձեռնադրուին . և այս Եկեղեցւոյս մէջ
» այս կերպով չի ձեռնադրուած Քահանայն ու Սար-
» կաւագը օրինաւոր չի սեպուիր » ։

« Ամեն Քահանայ և Սարկաւագ իր առած
» կարգը Առաքեալներէն ընդունած կը սեպէ իր Եպիս-
» կոպոսին միջնորդութեամբը » ։

« Անկլիքան Եկեղեցիին մէջ ուրիշ պաշտօնեայ-
» ներ ալ կան , ինչպէս որ ուրիշ բոլոր Քրիստոնեայ
» Եկեղեցիներուն մէջ ալ կան . բայց Եպիսկոպոսու-
» թեան , Քահանայութեան և Սարկաւագութեան
» Սրբազան Կարգերը ունենալէն ետքը , ալ ուրիշ
» բանի վրայ խօսիլը աւելորդ է » ։

« Ուստի՝ Անկլիքան Եկեղեցին Աւետարական , Ա-
» ռաքելական , և Կաթուղիկէ Պաշտօնեայներ ունի » ։

« Երկրորդ հարկաւոր խնդիրը՝ Անկլիքան Եկե-
» ղեցւոյն « Հաւատքն է » ։

« Այս Եկեղեցին՝ Նիկիոյ և Կոստանդնուպօլ-
» սոյ մէջ սահմանուած Հանգանակը կ՚ընդունի . և
» ան ատենէն կընդունի , երբ որ Քրիստոսէն 325 .
» և 381 տարի ետքը եղան այն Սինհոդները յիշ-
» եալ քաղաքներուն մէջ , որ հասարակօրէն կըսուի

» Հանգանակ Նիկիոյ » ։

« Այս հանգանակը ամեն օր մեր Եկեղեցիներուն
» մէջ կարդացուիլ սահմանուած է » ։

« Բայց անոր մէկ մասը Արեւելեան Եկեղեց-
» ւոյ Հանգանակէն կը տարբերի՝ Անգլիքան Եկեղե-
» ցին Հոգւոյն Սրբոյ Բղխումը ՚ի Հօրէ և յՈրդւոյ
» խոստովանելուն համար » ։

« Սակայն չի պարսաւեր զԱրեւելեան Եկեղե-
» ցին, որ այս խօսքերը չունի, ու « Եւ յՈրդւոյ »
» չի գործածեր իր հանգանակին մէջ » ։

« Ընդհակառակն Անգլիքան Եկեղեցւոյն պինտ
» ընտիր Աստուածաբանները կը խոստովանին, թէ՝
» այն մեծ ժողովքներով հաստատուած Հանգանակին
» մէջ այս բառերը չկան » ։

« Այն բառերը եօթներորդ դարուն՝ Արեւմտեան
» Եկեղեցիին մէջ մտան՝ այն Եկեղեցւոյն հանգա-
» մանացը նայելով հարկաւոր սեպուելուն համար » ։

« Բայց մենք մեր Արեւելեան եղբայրները չենք
» մեղադրեր՝ նոյն բառերը չունենալնուն համար. և
» ինչպէս կրնանք մեղադրել զանոնք, երբ որ սկիզ-
» բէն յօրինուած Հանգանակը անպակաս ունին ։
» Մէկ ալ մեզի կուգայ թէ՝ նոյն բառերուն համար
» մեր մէջը երեւելի տարբերութիւն մը կայ. վասն
» զի մենք կը հաւատանք Սուրբ Գրոց, որ Սուրբ
» Հոգւոյն « ՚ի Հօրէ բղխիլը » կը վկայեն, և « Որդ-
» ւոյն ձեռքովը » ղրկուիլը, ինչպէս որ Յովհաննէս
» Աւետարանիչ կը ցուցնէ ։ (ԺԵ. 26)։ Մենք միայն
» սա մտքերով կրսենք թէ՝ ՚ի Հօրէ կը բղխի, մէյ մը
» որ՝ « Հոգի Քրիստոսի » ըսուելուն համար ։ (Գա-
» ղատ. Դ. 6 Եւ Ա. Պետր. Ա. 11)։ Մէյ մըն ալ
» որ՝ « Քրիստոսէ կելլէ » ըսուած ըլլալուն համար ։
» (Յովհ. ԺԶ. 7)։ Եւ մէյ մ՚ալ, « Քրիստոսէ կառ-
» նէ ըսուելուն համար, (Յովհ. ԺԶ. 14)։ Չէ՞ նէ
» չիտակը՝ այս բաներուն վրայօք վէճ ընելու ուրիշ

» թենէն ետքը կըլլայ, բայց չէ թէ անմիջապէս,
» այլ որ ժամանակ որ տղան խելահաս ըլլայ, ու-
» պատրաստուի անձամբ հաստատելու այն ուխտերը,
» որ Աստուած ժամանակը կնքահայրները ըրած են
» իրեն համար »:

« Այս խորհուրդը միշտ Եպիսկոպոս մը կը կատա-
» րէ՝ ձեռքը անոր վրայ դնելով, և անոր համար ա-
» ղօթք ընելով: Սովորութիւնը աս է որ՝ մէկը դրոշ-
» մուելէն ետքը Հաղորդութիւն առնելու ազատ է »:

« Անկլիքան Եկեղեցին « Արձակման » համար
» կհաւատայ թէ՝ Քահանային իշխանութիւն և հրա-
» ման ունի Աստուծմէ՝ զղջացողներուն մեղացը թո-
» ղութիւն շնորհելու և կամ հրատարակելու,
» բայց այս զօրութիւնը իբր իր կողմանէ ՚ի գործ
» դնելու չէ, հապա Քրիստոսի իբր մէկ փոխանոր-
» դը, և Արձակումը ամենեւին մէկ զօրութիւն
» մը չունի՝ երբոր ընդունողը անզեղջ ըլլայ, և Քրիս-
» տոսի վրայ ճշմարիտ ու անկեղծ հաւատք մը չու-
» նենայ »:

« Անկլիքան Եկեղեցին Աղօթամատոյց մը կը գոր-
» ծածէ ընդհանուր պաշտամանց համար: Ամեն առ-
» տու և իրիկուն ժամերգութիւն ունի, նաև բոլոր
» կիրակի և ուրիշ Տօնախմբութեան օրերը »:

« Աստուածային պաշտամունքներ և արարողու-
» թիւններ սահմանած է Ամենասուրբ հաղորդու-
» թեան համար, Մկրտութեան, Դրոշմի, Ամուս-
» նութեան պսակի, Հիւանդի այցելութեան, Հի-
» ւանդի Հաղորդութեան, Թաղման, Կանանց որ-
» դեծնութենէն ետքը գոհութեան, Եպիսկոպոս-
» ներու՝ Քահանայներու՝ և Սարկաւագներու Օրհ-
» նութեան և Ձեռնադրութեան, Եկեղեցի Օրհ-
» նելու, և ուրիշ Քրիստոնէական Արարողութիւն-
» ներու ու Տօներու համար: Բոլոր տարուոյն ամեն
» օրական ժամերգութեանցը մէջ Հին և Նոր Կտա-

” կարանք կարդացունել կուտայ՝ ամէն օրուան հա-
” մար զատ զատ բաժնուած . նոյնպէս Դաւթի Սաղ-
” մոսները ամէն ամիս ամբողջ կը կարդացուի ” ։

“ Իր Աստուածային պաշտամանցը մէջ կան Եր-
” գեր, Գոհութիւններ և Աղօթքներ ” ։

“ Եպիսկոպոսները Քահանաները և Սարկաւագ-
” ները յատուկ Եկեղեցական Զգեստներ կը հագ-
” նին՝ ժամերգութեան պաշտօն վարած ատենին ” ։

“ Անգլիքան Եկեղեցին Տօնախմբութեան և
” Պահք օրեր ալ ունի ” ։

“ Տէրոջը օրէն 'ի զատ իրեն տօնախմբութեան
” օրերը ասոնք են ։ Ծնունդ Տեառն մերոյ, և անոր
” Թլփատութիւնը, Յայտնութիւն, Յարութիւն՝
” որ երեք օր է, Համբարձումն, Հոգեգալուստ՝
” որ երեք օր է, Աւետումն Ամենօրհնեալ Կուսին,
” և անոր Տաճարը Ընծայուիլը, Ծնունդ Յովհան-
” նու Մկրտչի, Տօն Սրբոյն Պետրոսի, Սրբոյն Յա-
” կոբայ մեծին, Սրբոյն Յովհաննու Աւետարանչի,
” Ս. Մատթէոսի, Ս. Մարկոսի, Սրբոյն Ղուկա-
” սու, Սրբոյն Փիլիպպոսի, և Ս. Յակոբայ փոքու,
” Ս. Անդրէասայ, Ս. Թովմասայ. Ս. Բարթուղի-
” մէոսի, Ս. Սիմօնի, և Ս. Յուդայի, Ս. Մատա-
” թիայի, Ս. Պօղոսի, Ս. Բառնաբայ, Ս. Ստե-
” փաննոսի, Անմեղ Մանկանց Բեթլեհէմի, և Սրբոյն
” Միքայէլի Հրեշտակապետին, և բոլոր Հրեշտա-
” կաց, և տօն ամենայն Սրբոց ” ։

“ Անանկով Անգլիքան Եկեղեցին՝ Կիրակիէն 'ի
” զատ, որ սկիզբէն հետէ միշտ՝ Սուրբ կը պահուի,
” երսունումէկ Տօնախմբութեան օր ունի ” ։

“ Կիրակիներուն մէջ՝ Հոգեգալուստէն ետքը
” առաջին Կիրակին երեւելի է, որ ան օրը Տօն Ա-
” մենասուրբ Երրորդութեան կը յիշատակուի ” ։

“ Նաև անմիջապէս Ծննդեան նախընթաց չորս
” Կիրակիները՝ իրենց մէջի եղած շաբաթներովը՝

» պատշաճ ժամանակներ են զգուշաւոր պատրաս-
» տութեան Ծննդեան համար » ։

« Անգլիքան Եկեղեցւոյն Պահք օրերը տարւոյն
» բոլոր Ուրբաթ օրերն են, նաեւ Մեծ Պահքը,
» որ Զատկէն առաջ քառասուն օր է, նաև երեք օր
» Պահք՝ Համբարձումէն առաջ։ Այլ և երեք օր
» մասնաւոր Պահք մը՝ Մեծ Պահոց երկրորդ շաբ-
» թուն մէջ. երեք օր Պահք՝ Հոգեգալստեան ե-
» տեւի շաբթուն մէջ. երեք օր Պահք՝ Սեպտեմբերի
» երրորդ շաբթուն մէջ. երեք օր Պահք՝ դեկտեմ-
» բերի երրորդ շաբթուն մէջ » ։

« Այս վերջին չորս Պահքերը տարւոյն չորս Ե-
» ղանակներուն համար են, և մասնաւոր կերպով
» մը կը յիշատակուին աղօթքներով Եկեղեցականնե-
» րուն համար՝ հետեւեալ կիրակիները Քահանայ և
» Սարկաւագ ձեռնադրելու՝ որոշեալ ժամակներ ըլ-
» լալուն համար » ։

« Այս Եկեղեցին մէկ տարին հարիւր օրի չափ
« Պահք ունի » ։

« Ահա Անգլիքան Եկեղեցւոյն բոլոր հանգա-
» մանքները նկարագրելնուս ետքը, հիմա օգտակար
» կը համարիմք անոր մէջի չեղած բաներն ալ
» պատմել » ։

« Քաւարանի վարդապետութիւնը չընդունիր,
» հապա բոլորովին կը հերքէ՝ թէ Սուրբ Գրոց և թէ
» Նախկին Հայրապետաց դէմ ըլլալուն համար » ։

« Կը հաւատայ թէ՝ Հաւատացեալ Ննջեցելոց
» հոգիները խաղաղութեան և հանգստութեան մէջ
» են՝ վերջին օրուան Երանութիւնը կատարելապէս
» վայելելու յուսով » ։

« Պատկերներու կամ Արձաններու երկրպագու-
» թիւն չըներ ։ Թէև պատկերներ կը գտնուի իր Ե-
» կեղեցիներուն մէջ, բայց Աստուծոյ տունը զար-
» դարելու միջոցով միայն դրուած կ'ըլլան անոնք, և

” ժողովուրդը ամենեւին յարգութիւն մը չեն ըն-
” ծայեր անոնց ”:

“ Սուրբերուն աղօթելու սովորութիւնն ալ
” չունի. Ճշմարիտ հաւատքով հրաժարուածները
” յարգելու ժամանակը, եւ անոնց յիշատակութիւ-
” նը՝ թէ Ամենասուրբ Հաղորդութեան Խորհուր-
” դին մէջ, եւ թէ սահմանուած Տօներուն մէջ կա-
” տարուած ատենը, անոնց աղօթք չի մատուցաներ:

“ Աստուծոյ աղօթք ըրած ատենը՝ որ շնորհք տայ
” մեզի անոնց բարի վարքերուն հետեւելու, զանոնք
” սուրբ մարդոց վիճակէն վեր չի բռներ: Կը հաւա-
” տայ թէ՝ անոնք մեզի հետ Սուրբ միութեամբ
” եղբայրներ են. եւ այս դիտաւորութեամբ կը յար-
” գէ եւ կը սիրէ զանոնք ”:

“ Անկլիքան Եկեղեցին Ամուսնութիւնը չարգի-
” լեր իր Եկեղեցականներուն, հապա ազատութիւն
” կուտայ, որ բոլոր Եպիսկոպոսները, Քահանայ-
” ները, եւ Սարկաւագները անխտիր այն վիճակին
” մէջ գտնուին, (թէ Ամուսնութեան, եւ թէ Ան-
” կընութեան), որն որ Աստուածպաշտութեան ե-
” ւելօք կը ծառայէ ”:

“ Ասանկ էր հին ատենները Անգղիացւոց Եկե-
” ղեցւոյն մէջ ”:

“ Անկլիքան Եկեղեցին՝ Հռոմայ Պապին գլխա-
” ւորութիւնը չի խոստովանիր. այլ զանիկայ հին ա-
” թոռներու Հայրապետներուն իբր մէկը կ'ընդու-
” նի՝ Իտալիայի միայն մէկ մասին վրայ առաջուց իշ-
” խանութիւն մը ունենալովը: Ուրիշ Եկեղեցինե-
” րու վրայ իշխանութիւն ունենալու իրաւունքը կը
” մերժէ. եւ կը հաւատայ թէ՝ ընդհանուր տիրողու-
” թեան պահանջմունքը՝ թէ Սուրբ Գրոց, եւ թէ
” նախկին սովորութեան հակառակ է ”:

“ Անկլիքան Եկեղեցին՝ մեր Տէր եւ Փրկիչ Յի-
” սուս Քրիստոսը ընդհանուր Եկեղեցւոյ մի միայն

» գլուխ կը խոստովանի . և այն զանազան Ուղղա-
» փառ Եկեղեցիները՝ նոյն Կաթուղիկէ Եկեղեցւոյն
» իբր ճիւղերը » ։

« Ընդ հակառակն՝ Անկլիքան Եկեղեցին՝ ուրիշ
» Այլադաւան Քրիստոնէից տարբեր կրօնքներուն
» հետ չի միաբանիր . Անոնք Անգղիայի մէջ ալ կան ,
» ու Ամերիկայի մէջ ալ » ։

« Դժբաղդաբար պատահեցաւ որ՝ վերջին 200
» տարուան մէջ ժամանակ ժամանակ Աղանդաւորներ
» ելան , և Անգղիացւոց Եկեղեցիէն զատուեցան , ո-
» րոնցմէ ոմանք շատ բազմամարդ եղան ։ Ասոնց մէջէն
» ալ ուրիշ Աղանդաւորներ ելան . անանկ որ՝ Անգ-
» ղիայի և Ամերիկայի մէջ հիմա քանըհինդէն մինչև
» երեսուն այլ և այլ տեսակ Աղանդաւորներ կան » ։

« Այս Աղանդաւորները իրարմէ շատ կը տար-
» բերին , և Անկլիքան Եկեղեցւոյն հետ ամենևին
» հաղորդութիւն մը չունին » ։

« Անկլիքան Եկեղեցւոյն Աղօթամատոյցը չեն
» ընդունիր . ոչ ալ անոր Տօնախմբութիւնները և
» Պահք օրերը կը պահեն » ։

« Ասոնցմէ որը կ'ըսէ թէ՝ Մկրտութիւնը միայն
» չափահաս մարդոց ըլլալու է . որը կ'ըսէ՝ թէ Քրիս-
» տոս մեր Փրկիչը Աստուած չէ . որը թէ՝ բոլոր
» բարի ու չար մարդիկ պիտի փրկուին , որը թէ՝ ոչ
» Մկրտութիւնը մատակարարուելու է , և ոչ Տէ-
» րունական Ընթրիքը » ։

« Նաև բոլորն ալ Առաքելական պաշտօնեայնե-
» րէ , այսինքն՝ Եպիսկոպոսներէ , Քահանայներէ ,
» և Սարկաւագներէ զրկուած են ։ Ասոնք թէև ի-
» րարմէ կը տարբերին , բայց բոլորն ալ այս բանիս
» կը միաբանին թէ՝ իրենք այն երեք Սրբազան Կար-
» գերը չունին , և այս բանով անոնց ամէնքն ալ
» Անկլիքան Եկեղեցիէն կը զատուին » ։

« Ասոնք ուրիշ շատ զանազան բաներով ալ կը

” տարբերին նոյն Եկեղեցիէն, ինչպէս որ առաջ ալ
” ըսինք, և անոր համար զգուշութիւն պէտք է,
” որ ատոնք Անկլիքան Եկեղեցւոյն հետ չխառնը-
” ուին. քանզի մէջերնին շատ քարոզիչներ ունին,
” որոնք աշխարհի զանազան մասերուն մէջ իրենց վար-
” դապետութիւնները կը տարածեն. և կ'ըլլայ որ
” անարդարաբար Անկլիքան Եկեղեցւոյն անդամները
” կարծուին ատոնք սխալմամբ, որ իրենք ալ բնաւ
” չեն ուզեր ատանկ երեւնալ”։

“ Անոնցմէ ոմանք Եպիսկոպոս կը կոչեն ինքզինք-
” նին. բայց ճշմարիտը աս է որ՝ անոնցմէ ոչ մէկն
” ալ Եպիսկոպոս է”։

“ Այն Արբազան կարգը՝ Քահանայութեան և
” Սարկաւագութեան կարգէն վեր բան մը չեն
” սեպեր”։

“ Անգղիա եկող և բնակող ամեն Եկեղեցական
” պարտի իր Եպիսկոպոսին Վկայականը իր քովը ու-
” նենալ. ու թէ որ չունի, հաստատ հաւատալու է
” որ անիկայ Անկլիքան Եկեղեցիէն չէ”։

“ Տասնուվեց տարիէն 'ի վեր[1] Տաճկաստանի մէջ
” Հայոց համար աշխատող Միսիօնարներուն բնաւ
” մէկն ալ Անկլիքան Եկեղեցիէն չէ։ Անոնք կամ
” Քոնկրիկէշընալիստ են, և կամ Բրէզպիտիրիըն,
” այսինքն՝ կամ Ժողովական, և կամ Երիցական, ո-
” րոնք Անկլիքան Եկեղեցւոյն Արարողութիւնները
” և Սահմանադրութիւնները չեն ընդունիր, ու բո-
” լորովին կը մերժեն, և նոյն Եկեղեցւոյն չեն հնա-
” զանդիր. գլխովին զատուած են անկէ”։

“ Անկլիքան Եկեղեցին ոչ անոնց Քահանաները
” կ'ընդունի, ոչ ալ անոնց գործքերուն կը հաւնի։
” ինք անոնց հետ ամենեւին գործ մը չունի. անոնց
” ըրած դէշութիւններուն ամենեւին պատասխա-
” նատու չէ. և ոչ ալ անոնց ըրած բարի գործքե-

[1] Ներկայ հատուածս առնուած գրութիւնը՝ 1847ին է գրուած։

» րուն համար իրենց գաւլութիւն մը կ՚ընծայէ »։

« Արեւելեան Եկեղեցիներուն մէջ հերձուա-
» ծողութիւններ կամ երկպառակութիւններ ելլե-
» լուն ամենեւին չի հաճիր . և ոչ ալ թող կուտայ
» իր Եկեղեցականներուն մէկին՝ զանոնք գրգռելու
» . . . ։ Կ՚ուզէ որ ան Եկեղեցին անբաժան ու
» պարզ մնայ , և չուզեր տեսնալ՝ որ անկէ հերձուա-
» ծողութիւններ ու աղանդներ ելլեն »։

Բայց մարդկութիւն է , եթէ Ամերիկացի քարոզիչք իրաւ չեն գիտեր այս բաները , ամօթ չէ , կրնան անգամ մի ալ Անգղիական եկեղեցւոյ Մաշտոցն և ուրիշ գրութիւններն քննելու ելլել , ինչպէս որ կընեն կոր ուրիշներունն , և այն ժամանակն շուտով պիտի համոզուին որ իրենցմէ չեն եղեր . և այն ժամանակն մեզի ներկայացուցած իննսուն միլիոննին սուտ և սխալ ըլլալն խոստովանելով՝ անոր դէմ մեզի սխալած և չգէտ ըսելնուն համար Մեղայ պիտի գոչեն , մեզի դէմ զինելու պատճառ բռնած խիստ շատ բաներնին նոյն պիտի գտնեն Անգղիական եկեղեցւոյ մէջ ալ . ապա թէ ոչ իրենց հոս այս կացութիւնն՝ գիտնալով Հայոց ազգին չարիք հասցնելու համար է , ազգը փեռեկտելու և եղբայր եղբօր դէմ զինելու համար է . . . իրենց որևիցէ նպատակնուն գործիք և միջոց ընելու համար։ «Այն մարդը» ըսած են նոյն իսկ Ամերիկացի քարոզիչք անգամ մի Ա—Եփաբերի մէջ « որ աւելի կընտրէ ամենէն պզտիկ
» սուտը ըսել , իր ամենէն աղէկ յաճախորդը չկոր-
» սնցնելու համար , իր դաւանած կրօնքին անվայել
» բան կ՚ընէ . . . . . »։

Վերջապէս Ամերիկացի քարոզիչներն Անգղիական և ուրիշ եպիսկոպոսական եկեղեցիներն դիտնան կամ չգիտնան , ուրիշ որևիցէ նպատակ մի ունենան կամ չունենան , աս ճշմարիտ է որ Հայոց եկեղեցւոյն վրայ կամ բոլորովին տգէտ են կամ

կամակորութեամբ չեն ուզեր կոր գիտնալ։ Հայոց եկեղեցւոյն վրայ ունեցած գաղափարներնուն ու կարծիքներնուն և տուած ծանօթութիւններնուն և ոչ մէկն չիտակ է, Հայոց վրայ ինչ որ ըսած են ամենն ալ զրպարտութիւն, սուտ և բամբասանք են։ Որդգիտմամբ ըլլայ կամ չգիտութեամբ՝ այսօր անոնց բոլոր գործքերնին ու կացութիւննին յայտնի չարիք մի է Հայոց ազգին և եկեղեցւոյն համար, որ ըսել է ընդդէմ է նաև բոլոր քրիստոնէութեան, ասոր համար բողոք կկարդանք բոլոր Եւրոպայի և Ամերիկայի այն ազգաց և ժողովրդոցն առջին որ կուզեն նախկին ընդհանրական եկեղեցին և անոր դրութիւններն յարգել։ Ամերիկացիք իրենց բոլոր գործքերովն քրիստոնէական ճշմարտութենէ հեռու ըլլալէ զատ, բնաւ մէկ վարմունքնուն մէջ ալ քրիստոնէական ջանից հետք մի կամ նշոյլ մի անգամ ցուցուցած չունին։ Փոխանակ առաքինութեան՝ մոլութեան, փոխանակ սիրոյ՝ ատելութեան, փոխանակ բարւոյ՝ չարի պատճառ են եղած և վերջապէս հայր մի իր որդին, մեծ մի իր պզտիկն չկարենալ խրատելուն և խեռի մի չզգաստանալուն միմիայն միջոց մի են եղած . . . ։

Եւրոպա կխաբեն որ հոս Աստուծոյ պարզ խօսքին քարոզութեանն ու տարածմանն կաշխատին. Հայոց ազգն Աստուծոյ խօսքին տարածմանն բան չըսեր, եթէ օրինաւոր կերպով կատարուի. Պապական եկեղեցւոյ պէս Սուրբ Գրքին տարածմանն ու ընթերցմանն դէմ արգելքներ ու բանադրանքներ չունի և ընդհակառակն միշտ յորդոր կկարդայ զայն կարդալ, քննել և ամեն բան անկէ սորվիլ և անոր վրայ փորձելու, որու ձեռքով և ուր տպագրուած կըլլայ թող ըլլայ. և արդէն Լոնտոնի և ուրիշ տեղերու Աստուածաշունչի Ընկերութեան կողմէն Վենետիկ, Փարիզ, Պէթըրպուրկ, Կալկաթա և

այլուր տպուած գրաբառ, աշխարհաբառ և տաճկերէն լեզուով օրինակներն՝ մեծ ընդունելութիւն և յարգ ունին Հայոց Եկեղեցւոյն մէջ, ինչպէս նաև 'ի սկզբան Ամերիկացւոց տպած գրաբառ Նոր Կտակարաններն ալ։ Բայց երբ աշխարհաբառի կամ տաճկերէնի թարգմանենք ըսելով, քանի մի տեսակ թարգմանութիւններնին իրար չքանեն կամ իրարու հակառակ մտքեր յայտնեն, և՝ ո՛չ մէկն գրաբառին չպատշաճին նէ՝ Հայոց Եկեղեցին ալ չառնելու, չկարդալու և չընդունելու իրաւունք չէ՞ մի ունենար. ատանկ թարգմանութիւններով՝ և անհմուտ կերպով գործուած այլայլութիւններով փոխանակ Աստուծոյ Խօսքին պատիւ ընելու՝ անարգանք բերած չէ՞ն մի ըլլար. ատոր համար կբողոքենք աշխարհիս՝ Աստուծոյ Խօսքին տարածմանն համար կազմուած Ընկերութիւններուն՝ որ Ամերիկացիք ալ Ընկերութեանց ստակին մեղք կընեն կոր։ Աստուծոյ խօսքն գործիք ըրած՝ հոս իրենց զատ ժողովուրդ և հպատակներ կազմելու են եղած . . . ։

Արդ հոս խօսքերնիս իրենց դարձնելով կըսենք Ամերիկացւոց որ եթէ մեր այս խօսքերն իրենց ջանիցն և վաստակացն դէմ անիրաւութիւն կհամարին և իրենց ջանքն և կացութիւնն միմիայն քրիստոնէական պարտաւորութեան մի համար է, միմիայն ճշմարտութեան սիրուն համար է, ալ աղէկ, գովելի նպատակ. ուրեմն մենք իրենց այդ նպատակին նպաստաւոր նոր միջոց մի կառաջարկենք, եթէ այնպէս է՝ պարտին չէ ըսել։ Որովհետև մեր ազգն աղքատ է, հազարումէկ պէտքեր ու կարօտութիւններ ունի, պարտքն ընտանիքէն կսկսի, զանոնք թողլով, ինքզինքն Ամերիկացւոց հասկցնել, սորվեցնել կամ քարոզելու և կամ Ամերիկացւոց ինքզինքնին նոյն իսկ իրենց ճանչցնելու ոչ ընկերութիւն ունի և ոչ ստակ ծախք ընելու ժամանակ,

Ա՝ափոփ եջերն ալ ազգին օգտակար նիւթերու վրայ ըլլալէք խորհրդածութիւններու և լուրերու համար հարկաւոր են, տոտնկ նպատակներու չենք կրնար ծառայեցնել. և նաև ազգին ինծի պէս անհատի մին ալ ստակին մեղք է որ օտար Ամերիկացիներն համոզելու և Հայոց եկեղեցւոյն վրայ տեղեկացունելու կամ անոնց սուտերն և սխալներն ուղղելու ծախուի։

Ասոր համար կըսենք իրենց որ, քանի որ ճշմարտութեան՝ և միայն ամեն բան յայտնի հասկցուելու և ծածուկ գաղտնի կամ չգիտցուած բան չմնալու համար կաշխատին, և այս նպատակիս համար Ամերիկա ալ իրենց առատ ստակ կմատակարարէ, բարեհաճին նաև՝ այսուհետև մեր կողմէն ալ շարունակ գրուելիքներուն հրատարակման ծախքերն յանձն առնուլ, կամ եթէ կարելի է Ամերիկա գրեն յատուկ այս նպատակիս համար ալ ընկերութիւն մի կազմել տան։ Արդարև կեանքերնուն մէջ քրիստոնէական գործ մի գործած կըլլան աշխարհի առջև, զի ճշմարտութեան յայտնութիւնն տաանկ կրնայ ըլլալ, երբ երկու կողմանէ ալ խօսուի։ Այս ըսածս միմիայն միջոց մի կրնայ ըլլալ Ամերիկացիներն Հայոց և Հայերն Ամերիկացւոց բացատրել ու ճանչցունելու. գրելն մենք յանձն կառնունք, նոյնպէս և եթէ հարկ ըլլայ անոնց Անգղիերէն և Գաղղիերէն թարգմանութիւններն և դեռ ուրիշ ինչ լեզուով որ պէտք ըլլայ, և կարծեմ բոլոր Եւրոպա և Ամերիկա ալ մեծապէս գոհ և ուրախ կըլլան այսպիսի բանի մի. և իրենք ալ իրենց բոլորտիքն գտնուած անհմուտ և Հայութենէ անլուր անձանցմէ առած և Եւրոպայի հաղորդած սուտ և սխալ տեղեկութիւններնուն պատճառաւն տաանկ աշխարհի առջև չեն թամբասուիր ու խայտառակուիր։

Եթէ կըսենք իրաւ հոգինուն և հոգիներուն

փրկութեանն համար կռչխատին, եթէ ճշմարտապէս քրիստոնէական պարտք մի կատարել է ջանքերնին, միմիայն միջոց մի կրնայ համարուիլ առաջարկութիւնս. ամօթ չէ որ չեն գիտեր, գիտնալ չուզելն է մեծ ամօթն ու մոլորութիւնն։ Եթէ իրենք գրեթէ երեսուն տարիէ 'ի վեր է որ Հայերն չկրցան իրենց ստութեանցն և մոլորութեանց շահիլ և Հայերուն ո՛վ և ի՛նչ ըլլալուն վրայ որոշ և ուղիղ գաղափար մի, տեղեկութիւն մի չկրցան ստանալ, անգամ մին ալ թող փորձեն, գուցէ Հայերն զիրենք ճշմարտութեան և ուղղութեան շահին, կամ գոնէ Հայերուն գրեթէ երկու հազար տարուան միմիայն շարունակուած և ամեն թշնամեաց զէնքերուն և արշաւանքներուն դէմ անյաղթ դիմակալած, ամեն իրեն զարնուողներն խորտակած և ինքն անդրդուելի մնացած, Աստուծոյ սիրելին և բոլոր քրիստոնէութեան ընտրելին՝ Հայոց Եկեղեցւոյ մի վրայ որոշ ուղիղ և յստակ աղբիւրէ քաղ տեղեկութիւններ առած կըլլան։ Եղ մի անօգուտ և անհմուտ գրուածներ հրատարակելով ամենուն գաղափարներն շփոթելնուն տեղ, ծախքերնին այս առաջարկութեանս որ ընելու ըլլան, մեծ ծառայութիւն մի ըրած կըլլան Հայոց և աշխարհի, որ իրենց պէս ուրիշ ժամանակ ուրիշներն ալ Հայոց ազգն անշուք տեսնելով և անոր վրայ ըստ ամենայնի անծանօթ ըլլալով կամ սխալ տեղեկացած ըլլալով, անոնք ալ չեն յանդգնիր ազգիս և եկեղեցւոյս վրայ յարձակելու և անոնք ալ իրենց խաղուն գործիք ընելու փորձ չեն փորձեր և Հայոց ազգին և Եկեղեցւոյն ալ վշտացն վերջն եկած կըլլայ, և Հայ միամիտներն ալ ամեն հոգւոյ հաւատալէ կազատին. և ասով իրենք ալ արդարև ազգիս և աշխարհի մեծ ծառայութիւն մի ըրած ըլլալէ զատ՝ աստուածային ալ մեծ պարտաւորութիւն մի կատարած կըլլան։

Եւ կամ եթէ այս մեծ երկար և ժամանակի կարօտ բան է, կխնդրենք ուրեմն գոնէ արտօնութիւն տան մեզի առայժմ՝ մենք ալ մեր կարծիքներն, դիտողութիւններն, պատասխաններն, բացատրութիւններն, խնդիրներն և մեկնութիւններն ազատաբար ղրկել ու Ա-Ե-Փ-Բ-Ե-Լ-ին մէջ հրատարակել տալ՝ ամեն ան կէտերուն վրայ որ գիտենք կամ կտարակուսինք. վասն զի ապօրինաւոր է որ իրենք շարունակ ուզածնին խօսին ու գործեն և մենք լռենք, և մեր միամիտներն միայն զիրենք մտիկ ընեն։ Աս կէտիս պատասխանն խիստ շուտ կուզենք և ոչ ապօրինաւոր, զի ամօթ չէ որ Հայոց ազգն ասանկ նպատակի մի համար մեծ ծախքեր չկարենայ ընել, հաւասարութեամբ Ամերիկացւոց հետ չկարենայ մրցիլ. ազգերնիս իր մէջն ասկէ առաջ շատ հոգալիքներ ունի. մանաւանդ որ իրենք Հայ լեզուով այս նպատակիս համար սահմանուած յատուկ թերթ ունին։

Դարձեալ կըսենք եթէ նպատակնին միմիայն ճշմարտութեան և իրաւանց յայտնութիւնն է, իրենք մասնաւոր առաջ առնելիք կամք մի կամ նպատակ մի չունին աս առաջարկութիւննուս չէ չըսեն, յայտնութենէ չփախչին, և ասով թող ըլլայ Քրիստոսի աշակերտներն ըլլալնուն հաւաստիք մի ցուցուցած ըլլան որ կըսէ, „Որ առնէ զճշմարտութիւն՝ „գայ առ լոյսն, զի յայտնի լիցին գործք նորա, թէ „Աստուծով գործեցան„. Յովհ. Գ. 21։

Եթէ այս չեն ուզեր և չեն կրնար յանձն առնուլ կխնդրենք ուրեմն այսուհետև Հայոց համար գրել, խօսիլ ու քարոզելէն ալ դադրին որ Քրիստոսի վերադրեալ խօսքին հակառակ եկած չըլլան, իրենց վարդապետութիւնն, իրենց քարոզութիւններն խաւարի մէջ գործել ուզած չըլլան, առանց դիմացնուններնէն իրենց ըսածներուն վրայ փորձ և քննութիւն ընդունելու։

Իսկ թէ որ ոչ անոր ականջ կախելով և ոչ ասոր, դարձեալ իրենց գիտցածնուն վրայ յամառին և դարձեալ իրենց սովորական ընթացքն շարունակեն, մենք ալ կյիշենք իրենց Քրիստոսի միւս խօսքն թէ, "Ամենայն որ զչար գործէ՝ ատեայ զլոյս, և ոչ գայ " առ լոյսն, զի մի յանդիմանեսցին գործք նորա "։ Յովհ. Գ. 20։

Ու վերջապէս խօսքերնիս եզրակացնելով և դարձեալ վերջին յօդուածնուս վերջին կտորն կրկնելով յօդուածնիս կվերջացնենք և կ՚սպասենք տեսնելու թէ մրդեօք օրերն ի՛նչ կծնանին։

"Նոյն իսկ իրենց խղճմտանքին և ծանօթու-
" թեանն դէմ ասանկ պատրուակեալ ու խայտառա-
" կելի յայտնի ստութիններ յօդողներն անշուշտ ի-
" րենց կրօնական պարտաւորութիններնէն դուրս
" ուրիշ նպատակներ ունենալու են . . . բայց մենք
" մեր ազգին միամիտներուն համար հսկելու, աղօ-
" թելու և կրցածնուս չափ զանոնք յորդորելու ենք,
" որ ասանկ մեքենայուած, ընդդէմ Աստուծոյ և ի-
" րաւանց սուտերու խաբուելով՝ ազգային և աստ-
" ուածային սրբազան պարտաւորութիններնուն
" դէմ չմեղանչեն և ծնողաց անարգութք չըլլան . . . "։

16 Յուլիս 1859 [1]։ Մ. Ա.։

[1] Եթէ հարկն պահանջելու ըլլայ Տեառրակիս գրութեան և հրատարակման թուականներուն մէջ եղած յապաղման պատճառն ու բացատրութիւնն ուրիշ անգամ կհրատարակենք։

30 Ապրիլ 1860։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## Ա.

### Աւետաբեր Թիւ 109 Փետր. 23ին (Ն. Տ.) հրատարակեց։

### ԵԿԵՂԵՑԻԻՆ ՀԵՏ ՄԻԱՑԻ՛Ր

*Ընթերցո՛ղ, կ'ուզեմ որ դուն միանաս մի միայն ճշմարիտ Եկեղեցիին հետ. ան Եկեղեցիին ուրկէց դուրս փրկութիւն չկայ։ Ես չեմ հարցներ քեզի թէ Կիրակի օրերը ո՞ւր կ'երթաս. ես միայն կ'ըսեմ քեզի որ մի միայն ճշմարիտ Եկեղեցիին հետ միանաս։*

*Ո՞ւր է աս մի միայն ճշմարիտ Եկեղեցին. ինչի՞ նման է աս մի միայն ճշմարիտ Եկեղեցին. ի՞նչ են աս մի միայն ճշմարիտ Եկեղեցին ճանչցուելու նշանները։ Աղէկ կ'ընես սաանկ հարցմունքներ ընելդ. ուշադրութեամբ ինծի մտի՛կ ըրէ, ու ես քեզի քանի մը պատասխաններ կու տամ։*

*Մի միայն ճշմարիտ Եկեղեցին՝* Տէր Յիսուսի Քրիստոսի բոլոր հաւատացեալներէն բաղկացած է։ *Անիկայ բոլոր Աստուծոյ ընտրեալներէն կազմուած է, բոլոր դարձի եկած մարդիկներէն ու կնիկներէն. բոլոր ճշմարիտ Քրիստոնեաներէն։ Որուն վրայ որ Հօր Աստուծոյ սէրը, Որդւոյն Աստուծոյ արիւնին սրսկումը, Հոգին Սուրբ Աստուծոյ սրբացուցիչ գործը կը տեսնենք, ան մարդը Քրիստոսի ճշմարիտ Եկեղեցիին մէկ անդամը կը ճանչնանք։ Ան րոպէին որ մէկը կը զղջայ, դարձի կու գայ, Քրիստոսի կը հաւատայ, ու Անոր անունովը կը մկրտուի, անիկայ մի միայն ճշմարիտ Եկեղեցիին անդամ մը կ'ըլլայ։*

*Անիկայ անանկ Եկեղեցի մըն է,* որուն բոլոր անդամները մի և նոյն նշանները ունին։ *Անոնց ամենն ալ Սուրբ Հոգիէն վերստին ծնած են. ամենն ալ ունին “ապաշխարութիւն դէպ 'ի Աստուած, հաւատք մեր Տէր Յիսուս Քրիստոսին վրայ”, ու սուրբ կեանք։ Անոնց ամենն ալ մեղքը կատեն, ու ամենն ալ կը սիրեն Քրիստոսը։ Անոնք տարբեր կերպերով ու արարողութիւններով երկրպագութիւն կ'ընեն, ոմանք աղօթքի ձև ունին, ոմանք չունին. ոմանք ծունկ չոքելով կ'ընեն, ոմանք կայնելով. բայց անոնց ամենն ալ մէկ սրտով աղօթք կ'ընեն. ամենն ալ մէկ Հոգիէ առաջնորդուած են, ամենն ալ մէկ հիմի վրայ կը շինեն։ Անոնց ամենն ալ իրենց կրօնքը մի միայն գիրքէ մը առած են, այսինքն Աստուածաշունչէն. ամենն ալ մի միայն մեծ կեդրոնին միացած են, այսինքն Յիսուս Քրիստոսին։ Ամենն ալ, մինչև անգամ հիմա մէկ սրտով կրնան ըսել “Ալէլուիա”. ու կրնան ամենն ալ մէկ սրտով ու մէկ ձայնով պատասխանել, “Ամէն ու ամէն”։* ԿԱ՛ՐԴԱՑՈՂ, ՆՈՐԷՆ Կ'ԸՍԵՄ, ԵԿԵՂԵՑԻԻՆ ՀԵՏ ՄԻԱՑԻ՛Ր։

ընդհանուր անդամոց ամէնն ալ. մինչեւ անգամ հիմա մէկ սրտով կ՚ըսեն ըսել «Ալէլուիա» ու կ՚ըսեն ամէնն ալ մէկ սրտով ու մէկ ձայնով պատասխանել Ամէն ու ամէն»։ Ընթերցո՛ղ, նորէն կ՚ըսեմ, ԵԿԵՂԵՑԻՆ ՀԵՏ ՄԻԱՑԻ՛Ր։ (Աւետաբեր հատ. 12, Թիւ 10) Եր. 14։ 1859 Փետր. 23)։

Գ.

## Աւետաբեր Թիւ 111 Մարտ 23էն (Ն. Տ.) հրատարակէց։

## ՄԵԾ ԵՒ ԿԱՐԵՒՈՐ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ՄԸ

Աս վերնագրին տակ՝ Մասիսը[1] նորէն հրատարակեց Աւետաբերի 109րդ Թիւին մէջի Եկեղեցիին հետ միացի՛ր վերնագրով յօդուածը, իր կողմէն այլ և այլ յաւելուածներ ընելով, իր նպատակին յարմար, Հայոց Լուսաւորչական Եկեղեցին չձգել համոզելու ժողովուրդը։ Աս հրատարակուած յօդուածին վրայ քանի մը դիտողութիւն ունինք։

Աւետաբերին մէջի յօդուածին բոլոր նպատակն է ցոյց տալ աշխարհիս մէջի ամէն մարդոց ճշմարիտ Քրիստոնեայ ըլլալու պարտաւորութիւնը։ Յայտնապէս ցուցուած է թէ յօդուածը գրողը չփնտռեր կարդացողին որ բաժանելի Եկեղեցիին վերաբերիլը՝ կամ անոր ինչ կերպ բաւերով Աստուծոյ երկրպագութիւն ընելը գիտնալու, այլ թէ արդեօք ինքը անբաժանելի ճշմարիտ Եկեղեցիին անդամն է, այսինքն թէ արդեօք ինքը ճշմարիտ Քրիստոնեա՞յ է սրտանց։ Խնդիրը ան չէ թէ ինքը աս կամ ան Եկեղեցին մկրտուած է, կամ թէ աս կամ ան ձեւովը աղօթք կ՚ընէ, այլ թէ արդեօք իսկապէս ու սրտանց զղջացա՞ծ է մեղքէն ու ճշմարտապէս հաւատացա՞ծ է Յիսուս Քրիստոսի, ու Աստուծոյ խօսքին կը հետեւի՞ իր ամէն օրուան ընթացքին մէջ։ Ասիկա՛յ է Քրիստոնեայ ըլլալը։ Հազարաւորներ ու միլիոնաւորներ կը դաւանին Քրիստոնէութիւնը՝ որոնք իրօք Քրիստոնեայ չեն։ Անոնք մէկ բաժանելի Եկեղեցիի մը անդամ են, բայց ոչ անբաժանելիին։

Աղէկ գիտենք որ աս զանազանութիւնը չճանչցողներ կան, բայց քիչ մը քննութիւնը ասոր իրաւացի ըլլալը ցոյց պիտի տայ։

Բոլոր անոնք որ կը դաւանին Քրիստոնէութիւնը, ըլլան Լուսաւորչական՝ Բրօթէսթանդ՝ Յունադաւան՝ Նեստորական՝ Յակոբիկեան, և այլն, և այլն՝ բաժանելի Եկեղեցիին կը վերաբերին։

[1] Մասիսի 370 Թուոյն մէջի Մեծ և կարևոր յայտարարութիւն մը Վերտառութեամբ յօդուածին (Տես յաւելուած Բ.) առանց սրբագրութեան Մասիսի բերնէն գրած ըլլալնուս՝ Աւետաբերն ալ աս Մասիս խօսքէն իր խօսքերն ներքեւ յօդուածի մէջ։

Անոնք թող ըլլայ թէ իրար Քրիստոնեայ չճանչնան, բայց սա կայ որ աշխարհին առջեւ Քրիստոնէութիւն ԴԱՒԱՆՈՂ ճանչցուած են։— Անոնք մարդոց « տեսանելի » են իբրեւ Քրիստոնեայ։ Բայց Աստուած՝ որ սիրտերը կը քննէ, կը տեսնէ թէ անոնց մէջէն շատեր կան որ իսկապէս ու սրտանց Քրիստոնեայ չեն։ Շրթունքով Քրիստոս կը դաւանին, բայց գործքով զինքը կ'ուրանան։ Իրեն առջեւ անոնք բնաւ Քրիստոնեայ չեն։ Ինքը միայն անոնք Քրիստոնեայ կ'ընդունի որ իսկապէս ու սրտանց կ'ատեն մեղքը, ու կը սիրեն սրբութիւնը ու Քրիստոսի պատուէրները կը կատարեն. ուրիշ խօսքով, անոնք որ չէ թէ միայն ջուրէն այլ Սուրբ Հոգիէն ծնած են։ Անոնք « անտեսանելի » Եկեղեցիին վերաբերածներն են, այսինքն մարդոց « անտեսանելի », բայց Աստուծոյ « տեսանելի »։

Մասիսը բոլորովին շփոթեր է ան յօդուածին իմաստը. բայց ատոր վրայ ալ խօսելու հարկ չկայ։ Անիկայ կրկին հրատարակելուն նպատակը՝ իր կողմէն ալ մեկնաբանութիւններ ընելով, ան է որ իր Լրագիրը կարդացող Բրօթէսթանդներուն միտքին վրայ ազդեցութիւն մը ընէ, բայց անոնք մեր յօդուածին միտքը արդէն հասկցած են։

Բայց բան մը կայ որ անիկայ չենք կրնար առանց դիտողութեան անցնիլ։ Ինքը կատարելապէս կը ճանչնայ և կ'ընդունի թէ Բրօթէսթանդներն ալ Յիսուս Քրիստոսի միակ ճշմարիտ Եկեղեցւոյն կը վերաբերին։ Իր խօսքն է սա թէ « Ամէնն ալ մէկ հիմ, մէկ հիմնական սկզբունք ունին, հաւատոյ էական մասանց և փրկութեան միջոց եղած բաներու մէջ մէկ են . . . և երևելապէս ալ մի միայն միութեան ամփոփեալ կապն կամ դաշնադրութիւնն ունին, այսինքն Նիկիական հանգանակն։ Միայն մէկ ազգի մի, տեղի մի կամ ժողովոյ մի անուամբ չի ճանչցուիր սա ճշմարիտ եկեղեցին. յայտնի ուրացողներն մէկդի առնելով՝ Հայ, Յոյն, Պապական, Բողոքական (Բրօթէսթանդ), Ռուս, Գերմանացի, Գաղղիացի, Անգլիացի, Ամերիկացի, Բրուսիացի, Հոլանտացի, Սպանիացի, Հնդիկ, Չինացի և այլ անուններով . . . ազգերէ եղող մէկ մի կրնայ նաև անդամ մի եղած ըլլալ Յիսուս Քրիստոսի մի միայն ճշմարիտ եկեղեցւոյն »։

Թէ որ սա ըսածը ճշմարիտ է, ան ատենը Հայոց Լուսաւորչական Եկեղեցին ճանչնալու է Բրօթէսթանդ Քրիստոնեաները իբրև սրտանց սիրեցեալ եղբայրներ, ողջամիտ վարդապետութիւնով հիմնական սկզբունքներու մէջ, ու Քրիստոս Յիսուսի աշխարհիս մէջի մեծ Եկեղեցիին ամբողջական մէկ մասը։

Ուստի ալ այսուհետև Հայոց Լուսաւորչական Պատրիարքներէն՝ Եպիսկոպոսներէն կամ Վարդապետներէն Բրօթէսթանդներուն վրայ քանադրանք՝ նզովք կարդացուելու բան չի մնար. ալ անոնց վրայ Նոր-աղանդ, հերետիկոս, և այլն, և այլն, նախատական տիտղոսներ բարդելու հարկ չի մնար. ոչ ալ անոնց հետ գործառնութիւն չընելու՝ հապա վայրենի գազաններու և թունաւոր օձերու պէս վտանգաւոր երևցնելով անոնցմէ փախչելու հրամաններու տեղ կը մնայ[1]։

---

[1] Ցան. Կ'երևայ թէ Ռոստոմեանց Առաքել վարդապետը կարօտ է

նէական Ճշմարիտ եկեղեցւոյ հետ միանալու բաղձանք ունէին։ Այս կարծեօք էր որ յիշեալ յայտարարութիւնն մենք ալ լրագրոյս մէջ հրատարակեցինք։ Աւետաբերն իր 111 թուոյն մէջ նոյն յայտարարութեան ուրիշ մեկնութիւններ տալով՝ կծանուցանէ որ մենք սխալ կարծիք ըրեր ենք անոր բուն մտացն վրայ. ետքն ալ կելլէ անոր իրենց կողմանէ և իրենց բերնէն գրուած ըլլալն մտացածի պէս՝ իրեն նպաստաւոր հետեւութիւններ հանել տալ կուզէ մեզի որ ամենեւին չենք ընդունիր։

Աւետաբերի խմբագիրն խիստ լաւ գիտէ, որ հաւատոյ էական մասանց և Պետրոսեան Աթոռոյ եղած միաբանութեան մէջ ընդհանուր եկեղեցւոյ անհամաձայն գտնուողն՝ անոր միութենէն դուրս է, վերջապէս հերետիկոս և աղանդաւոր է։

Ուստի իր 111 թուոյն մէջ ըրած բոլոր ընդվայրաբանութիւններն՝ մեր աչքին պատրուակեալ յետսակոչում մի կամ հակառակ և քաշկռտուզական մեկնութիւններ են 109 թուոյն մէջ հրատարակուած Մեծ և Փոքր յայտարարութեան։

---

# Ը.

## Աւետաբեր Թիւ 112 Ապրիլ 6ին (ն. տ.) հրատարակէց։

## ՄԱՍԻՍՆ ՈՒ ՄԵԾ ԵՒ ԿԱՐԵՒՈՐ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

Մասիսի խմբագիրը[1] իր 372րդ թերթովը (Մարտ 12, Հ. Տ.) ազնուոր յետադարձ մը ըրաւ իր 370րդ թերթին մէջ բռնած դիրքէն, ուր որ աշխարհիս մէջ գտնուած Բրօթէսթանդները ընդունած էր իբրեւ անդամ Ճշմարիտ Եկեղեցւոյն Քրիստոսի։

Մենք ալ տեսանք ընկերքին աւաղուց խելահաս ըլլալը տեղ ունէինք. ինչու որ աղէկ կ'իմանայինք գիտնալ թէ ատ իր բարեսրտութիւնը պիտի սրբագրէր "Լուսաւորչական Եկեղեցին մէջ գտնուող այնպիսի Հայազգի անդամները որոնց համակրութիւնը զօրաւոր կերպով Հռոմի հետ է", ու կարծիքնիս ան էր որ բնաւ իրեն հանդիսա պիտի չտան մինչեւ որ Բրօթէսթանդներն ալ Յիսուս Քրիստոսի մի միայն Ճշմարիտ Եկեղեցւոյն մէկ մասը ճանչնալու դաւանութիւնը ետ չառնէ։ Բայց պարտական ենք ըսելու որ իր ետ քաշուելուն կերպը շատ պատիւ չըներ իրեն։ Ինքը անանկ մը կը ձեւացընէ թէ Աւետաբերին մէջ մեր յօդուածը կարդացած ժամանակը կարծիք ըրեր է եղեր որ "Աւետաբերի խմբագիրներն՝ ընդհանուր Եկեղեցւոյ դէմ ունեցած հակառակութիւններնէն և զիրենք անկէ բաժնող մոլորութիւններէն հրաժարած, հառա-

[1] Նշանակէ և Մասիսի 372 թուոյն մէջ յօդուածն առանց ստորագրութեան Մասիսի խմբէն գրուած ըլլալուն՝ Աւետաբերն ալ ըստ այնմ զոր Մասիս խօսողէ նաև իր ներքին յօդուածն։

Իրոյ Էջեան Մասանց և Քրիստոնէական Վերոյ Եղած Բաներու Վրայ ունեցած տարա-
ձայն և մոլար կարծիքներնին թողուցեր վերստին Քրիստոնէական Ճշմա-
րիտ Եկեղեցւոյ հետ միանալու բաղձանք ունէին դ, և թէ սաանկ կար-
ծիք ընելուն համար ըսած է եղեր ինչ որ առածլուց ըսած էր ։ Այսինքն
թէ՝ ինքը անանկ հասկցած է որ մենք Բրօթէսթանդ ըսելէն ա՛լ դադրեր
էնք եղեր , ու անոր համար ըսեր է եղեր իր ընթերցողներուն թէ Բրօ-
թէսթանդներն ալ անդամ են Յիսուս Քրիստոսի մի միայն Ճշմարիտ
Եկեղեցւոյն (՛) ։ Իր առջի խօսքը աս էր ։ — « Միայն մէկ ազգի մի ,
տեղի մի կամ ժողովոյ մի անուանով չճանչցուիր աս Ճշմարիտ Եկեղեցին .
յայանի ուրացողներն մեկղի առնելով՝ Հայ , Յոյն , Պապական , Բո-
ղոքական ( Բրօթէսթանդ ) , Ռուս , Գերմանացի , Գաղղիացի , Անգղիա-
ցի , Ամերիկացի , Բրուսիացի , Հոլանտացի , Սպանիացի , Հնդիկ , Չի-
նացի և այլ անուններով . . . ազգերէ եղող մէկ մի կրնայ նաև անդամ
մի եղած ըլլալ Յիսուս Քրիստոսի մի միայն Ճշմարիտ Եկեղեցւոյն դ ։

Տարակոյս չկայ որ եթէ իր հիմակուան մեկնաբանութիւնը արժէք
մը ունի , անանկ հասկցած ըլլալու է ինքը որ բոլոր Գերմանացի , Անգ-
ղիացի՝ Ամերիկացի՝ Բրուսիացի՝ Հոլանտացի , և այլն , և այլն , Բրօ-
թէսթանդները Աւետարանի խմբագիրներուն հետ մէկ տեղ ձգած էին
իրենց պարզ այն և մոլար կարծիքները , ու պատրաստ են միանալ անոր հետ
ինչ որ ինքը Քրիստոնէական Ճշմարիտ Եկեղեցի կոչած է ։ Որ ընդհակա-
ռակն իր բոլոր յօդուածը 370 րդ թուին մէջ ցոյց տալու ճիգ ունէր
թէ Բրօթէսթանդները Բրօթէսթանդ մնալու են , Լուսաւորչականները
Լուսաւորչական , Յունադաւանները Յունադաւան , Պապադաւանները՝
Պապադաւան — ամէն մէկը մի միայն Ճշմարիտ Եկեղեցիէն վերաբերելով ,
բայց իրարմէ անդամ առնելու իրաւունք չունենալով ։ Թէ որ աս չէր
ան յօդուածին նշանակութիւնը , ալ ի՞նչ էր ։ Եւ հիմա լնտօր կրնայ
ըլլալ ըսել , իր առջի ըսածին ուղղակի հակառակը թէ Գերմանացի՝
Անգղիացի՝ Ամերիկացի , և այլն , և այլն , Բրօթէսթանդները անդամ
չեն մի միայն Եկեղեցւոյն , լոկ անոր համար որ ինքը կտեսնէ եղեր թէ
Աւետարանի խմբագիրները առաջ լնտօր էին՝ հիմա ալ ճիշդ անանկ
Աւետարանական են ։ Ահա՛ , մի և նոյն բերնէն կելլէն օրհնութիւն ա-
անէծք ։ Մէկ շաբթուն կելլէ ամէնքս Քրիստոսով եղբայրներ կանուանէ ,
հետևեալ շաբթուն հերետիկոս և աղանդաւոր (՛) ։

Կուրախանանք որ մեր դատաւորը Մասիսին խմբագիրը չէ , ու ոչ
ալ ինքը մեզ անիծելու չարժողներն են մեր դատաստանը տեսնողները ,
բայց Տէր Յիսուս Քրիստոսը՝ որ մեզի իր Աւետարանը տուաւ մի միայն
առաջնորդ՝ ըլլալու երկինք երթալու ճամբուն մէջ ։

Հոս պատեհութիւն կառնենք բան մը հարցնելու Մասիսին ու շատ
կըփափաքինք՝ պատասխանը կանուխ ընկել տեսնել ։

Ի՞նչ իմանալ կուզէ Քրիստոնէական Ճշմարիտ Եկեղեցին ըսելով , որուն
հետ որ իրեն նայելով ամէն Ճշմարիտ Քրիստոնէայ միանալու պարտա-
ւոր է ։ Նաև

Ի՞նչ կհասկնայ Հասարդ Էջեան Մասանց և Քրիստոնէական Վերոյ Եղած
Բաներ ըսելով ։

Օ.

Արեւելք 114 թուոյն մէջ նիկոմիդացի բողոքականէ մը գրուած նամակ մը հրատարակեց Մայիս 4ին (Ն. Տ.) ԻՆՆՍՈՒՆ ՄԻԼԻՈՆ ՄԱՍԵՐԷ ԲԱՂԿԱՑԱԾ ՄԿՐԱՏ ՄԸ վերտառութեամբ։ Անոր պատասխան Մասիս 380, 381 թուերուն մէջ նոյնպէս նիկոմիդիացի հայկականէ մը գրուած նամակ մը հրատարակեց Մայիս 7 և Մայիս 14ին (Հ. Տ.) ԻՆՆՍՈՒՆ ՄԻԼԻՈՆ ՄԱՍԵՐԷ ԲԱՂԿԱՑԵԱԼ ԱՆԽՈՀԵՄՈՒԹԻՒՆ ՄԸ վերտառութեամբ։ Անոր պատասխան Արեւելք 118 թուոյն մէջ նոյն նիկոմիդացի բողոքականէն գրուած ուրիշ նամակ մը հրատարակեց Յունիս 29ին (Ն. Տ.) ԻՆՆՍՈՒՆ ՄԻԼԻՈՆ ՄԿՐԱՏ ՄԸ ԵՒ ԻՆՆՍՈՒՆ ՄԻԼԻՈՆ ԱՆԽՈՀԵՄՈՒԹԻՒՆ ՄԸ վերտառութեամբ։ Որոյ այս նորերուն մէջ Բողոքականաց կողմէն պարծանօք յառաջ բերուած կէտի մը բացատրութեանն համար՝ Մասիս թիւ 385 Յունիս 11ին (Հ. Տ.) հրատարակեց։

## ԻՆՆՍՈՒՆ ՄԻԼԻՈՆԻ ՄԵԾ ՍՈՒՏԻՆ ՎՐԱՅ

*Արգոյ բարեկամ. Կարդացի Նիկոմիդացի Հայուն ամերիկացի քարոզչաց և անոնց արբանեկացն՝ շատ անգամ յեղյեղած և վերջին անգամ Արեւելքի 114 թուոյն մէջ կրկնած իննսուն միլիոնի մեծ ստոյն դէմ գրած յօդուածն՝ որ հրատարակեցիք լրագրոյդ 380 և 381 թուերուն մէջ. բայց կէտի մը վրայ ուզեցի քանի մը կարճ խօսքով քիչ մը եւս բացատրութիւն մը տալ։*

*Անշուշտ այս մեծ թուով կուզէն Քրիստոսի ճշմարիտ եկեղեցի մը նշանակել. բայց անոր վրայ մէկն ալ իրենց հարցուցած չէ։ Կխնդրեմ անոնցմէ որ ցուցնեն, ո՞վ են այս իննսուն միլիոն ժողովուրդն, աշխարհիս ո՞ր անկիւնն կգտնուին, իրօք կա՞ն թէ մտացածին ենթադրութիւն մի են. եթէ, ըստ իրենց՝ անտեսանելի են, աշխարհագիրն ի՞նչպէս կրցած են ընել, և թէ ազգերն ի՞նչ պայմաններով կընդունուին այս փարախն։*

*Յայտնի է որ Պապական եկեղեցին իրենց հակառակութեան կէտ նպատակի բռնելով՝ Արեւելքեն Հայական և Յունական եկեղեցիներն այս փարախէն չեն, վասն զի պապականութեան հոտ ունին իրենց խօսքին և, հետևապէս, իրենց հակառակութեան ենթակայ. նոյնպէս և Արեւմուտքէն Անգղիոյ, Բրուսիոյ, Շուէտի, Հոլանտայի, Տանիմարքայի և այլ ազգաց եպիսկոպոսական եկեղեցիներն ալ չեն, վասն զի անոնք ալ պապականութեան հոտ ունին, և որչափ Արեւելքի Հայերն և Յոյներն, նոյնչափ և Արեւմուտքի այս ազգերն հեռու են իրենցմէ ըստ իրենց խօսքին, ուստի անոնք ալ իրենց հակառակութիւններուն ենթակայ.*

և եթէ ուզեն՝ իրենցմէ կրնա՞ն մի եղած ըլլալ. եթէ չեն կրնար ըլլալ՝ ապա մի՛լ են առ խնդրոյն մէջ իրենց բաղկացուցիչներն . . . ։ Ահա հոս յայտնապէս հարկ կըլլայ սա՛ մեծ տարբերութիւն թէ՛ւ պղտորեցունել ու չատ պղտորեցունել և Երէցական կամ Ժողովական ըսուած հերձուածող աղանդաւորաց թէ՛ւ միայն նշանակել (որ մերժուած են ինչպէս մենէ նոյն և Անգղիական և այլ եկեղեցիներէ), և.այն ժամանակն միայն Հայոց եկեղեցւոյն Թուոյն հետ բաղդատելու ելլել և հարցունել՝ նոյնչափ մասերէ միայն չինուած Դրոշ՛ մի չինութիւնն և արժանիքն . . . ։ Նոյն իսկ իրենց խղճմտանքին ու ծանօթութեանն դէմ սաստիկ պատրուակեալ ու խայտառակելի յայտնի ստութիւններ յօդողներին՝ անշուշտ իրենց կրօնական պարտաւորութիւններէն դուրս ուրիշ նպատակներ ունենալու են . . . բայց մենք մեր ազգին միամիտներուն համար հսկել, աղօթել ու կրցածնուս չափ յորդորելու ենք որ, սաստիկ մեքենայուած ընդդէմ Աստուծոյ և իրաւանց, սուտերու խառնելով, ազգային և սուրբ աւանդային ուղղափառ պարտաւորութիւններուն դէմ չմեղանչեն և ծնողաց անարգութ չըլլան . . . ։ Մ. Ա.։

---

Ժ.

Աւետաբեր Թիւ 119 Յուլիս 13ին (Ն. Տ.) Հրատարակեց։

ԻՆՆՍՈՒՆ ՄԻԼԻՈՆԻ ՄԵԾ ՍՈՒՏԻՆ ՎՐԱՅ

Մասիս լրագիրին 385րդ թիւին մէջ սա վերնագիրով յօդուած մը կայ որ ուշադրութիւննիս կը պահանջէ ։ Երբոր մարդ մը սխալ եղած բան մը կը ուրանէ ըմբռնողութեան պատճառով, ան անձը սուտ չըսեր, այլ պարզամիտ սխալած է կըսուի ։ Աս պատճառով է որ նոյն յօդուածը պատրաստող Պարոն Մ. Ա. Գրագէտը չենք ուզեր ստախօս կոչել, ինչու որ իր խօսած բանին վրայով բոլորովին չգիտութեան մէջ կը տեսնուի ու անոր համար ալ սխալած է կըսենք ։

Ինք կըսէ թէ Բրօթէսթանդ Եկեղեցիները Անգղիայի՝ Բրուսիայի՝ Շուէտի՝ Հոլանտայի՝ Տանիմարգայի և այլն, Եպիսկոպոսական Եկեղեցի են, ու թէ անոնք Ամերիկացիներէն այնչափ հեռու են՝ որչափ որ Հայերը Յոյները և Պապականները ։ Թէ որ Աշխարհագրութեան նայէր, պիտի տեսնէր թէ Բրուսիայի և Հոլանտայի Բրօթէսթանդ Եկեղեցիները Եպիսկոպոսական չեն, ու թէ Բրիտանիայի Բրօթէսթանդ ժողովուրդին ալ կէսէն աւելին չէ Եպիսկոպոսական։

Եւ ան խօսքին գալով թէ սա Եկեղեցիները Ամերիկացիներուն հետ Քրիստոնէական հաղորդութիւն ունենալու մասին հեռու են, Հայոց և Յունաց պէս, կըսենք թէ սա կէտը քննել ուզողը Բերա Հո-

լանտացւոց Դեսպանատունին մատուռը կրնայ երթալ Կիրակի օր մը, կէսօրէն 2 ժամ առջը, ու պիտի տեսնէ որ Ամերիկացի Միսիոնարները հոն քարոզ կուտան շատ պատուաւոր ժողովուրդի մը, կամ նաև կրնայ ուզողը՞ երթալ Բրուսիայի Դեսպանին Մատուռը, ու պիտի՞ տեսնէ որ Բերլայի ընիկ Բրօթէսթանդները կանոնաւոր պաշտօն կը կատարեն հոն։

Պարոն Մ. Ա. կըսէ թէ Անգղիական Եկեղեցին և ուրիշ մեծամեծ Արեւմտեան ազգաց Եկեղեցիները կընդունին թէ Առաքելական յաջորդութեամբ ձեռնադրութիւն հարկաւոր է, Եկեղեցական աստիճանութիւնները կը յարգեն, ու եօթը խորհուրդ եկեղեցւոյ կը ճանչնան։ Աս ըսածներուն նկատմամբ իր անգիտութիւնը ի՛նչ աստիճան ըլլալը ցոյց տալու՞ համար պարզապէս վկայութիւն կը բերենք Անգղիական Եկեղեցիին Աղօթագիրքին մէջ եղած Հաւատոյ Դաւանութեան 39 յօդուածներէն 25րդը որ Եկեղեցւոյ խորհուրդներուն վրայով է ու այսպէս գրուած է. — «Երկու խորհուրդ կայ մեր Տէր Յիսուս Քրիստոսէն սահմանուած Աւետարանին մէջ, որոնք են Մկրտութիւնն ու՞ Տէրունը Ընթրիքը»։

«Ան հինգը որ ընդհանրապէս կըսուի խորհուրդ, այսինքն, Դրոշմ, Ապաշխարութիւն, Կարգեր, Ամուսնութիւն և վերջին օծում, Աւետարանին խորհուրդները սեպուելու չեն»։

Պարոն Մ. Ա. կըսէ թէ Անգղիական և ուրիշ Եկեղեցիներուն Աղօթագիրքերը այսպէս գրուած են, «Անձ մի իր մեղքերն մանրամասնաբար ոխով խոստովանի քահանային և քահանայն ալ արձակում ոխով տայ սա կերպով. «Տէրն մեր Յիսուս Քրիստոս, որ աւանդեաց Եկեղեցւոյ իւրոյ կարողութիւն արձակելոյ զամենայն մեղաւորս որ ապաշխարիցեն և հաւատայցեն 'ի նա ճշմարտութեամբ, թողութիւն շնորհեսցէ յանցանաց քոց ըստ մեծի ողորմութեան իւրում. և ես նորին իշխանութեամբ՝ որ տուեալ է ինձ՝ արձակեմ զքեզ յամենայն մեղաց քոց, յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։ Ամէն»։

Ասիկայ ալ սխալ մըն է, ըստ որում ո՛չ Անգղիական ու ոչ ալ ուրիշ Բրօթէսթանդից Աղօթագիրքի մէջ ասանկ կանոն մը կրնայ գտնուիլ։

Իր մէջ բերած արձակումի ձեւը որչափ ալ որ Անգղիական Աղօթագիրքին մէջ գտնուի, անիկայ միայն հիւանդներուն այցելութեան պաշտօնին մէջ գործածուելէն ուրիշ բանի համար չէ. ու աս ալ Պապականութեան ան մնացորդն է որոնց որ մէկ քանին դեռ կգտնուի Աղօթագիրքին մէջ, և Անգղիական Եկեղեցւոյն չորս մասին իրեքը ասանկ բան մը գտնուելն ալ չեն գիտեր։ Աս Եկեղեցին ընաւ մէկուն վրայ պարտք չի դներ որ և իցէ պարագայի մէջ քահանայի խոստովանանք ըլլալ։

Պատասխանելով Պարոն Մ. Ա. Գրապէտին հարցումին թէ իր մէջ բերած Քահանայական արձակումը կընդունի՞նք արդեօք, կըսենք թէ «Չէ՛», ու ասանկ ալ պիտի ըսեն Անգղիական Եկեղեցւոյն հաւատարաւոր ու միլիոնաւոր անդամները։

Պարոն Մ. Ա. կըսէ թէ «Արեւմտեան մեծամեծ Եկեղեցիները» Ամերիկացիները կմերժեն, որչափ որ Հայերը։ Ասոր ալ սխալ ըլլալը մեր երկու յիշողութիւններէն յայտնի է։

Նաեւ թէ Բողոքականաց Աշխարհին մէջ մեծ ու ընդարձակ Ընկերութիւն մը կայ Աւետարանական Միաբանութիւն կոչուած։ Աս Ընկերութեան հաւատակից ժողովները կըլլան ժամանակ ժամանակ աշխարհիս ամէն կողմն եղած Բողոքականաց Քրիստոնեաներու կողմանէ խրկուած Նուիրակներէ կազմուելով։ Աս տեսակ ժողով մը Պեռլին (Բրուսիայի Մայրաքաղաքը) եղաւ անցեալ տարի, որուն վրայով լրագրին տեղեկութիւն տրուեցաւ Աւետաբերին մէջ։ Հոն կային Եկեղեցական ու Աշխարհական անձեր Անգղիայի՝ Սկովտիայի՝ Իրլանտայի՝ Շուէտի՝ Տանիմարգայի՝ Բրուսիայի ու Գերմանիայի ամէն մասերուն, ու Հոլանտայի՝ Գաղղիայի՝ Զուիցերիի՝ Տաճկաստանի՝ Յունաստանի ու Ամերիգայի Եկեղեցիներէն, որոնց թիւը քանի մը հազար հոգիի կը հասնէր։ Անոնց մէջ կար Եպիսկոպոսական, Երիցական, Ժողովական, և այլն, և այլն, և ինը օր գերազանց միաբանութիւնով ու հոգևոր շինութիւնով անցան ժողովները, և երկու հեղ Տէրունական Ընթրիքին հաղորդութիւնը մատակարարուեցաւ ու ամէն բան խաղաղութիւն ու հանդարտութիւն ու սէր էր մինչև վերջը։ Ասիկայ բաւական հերքում մըն է Պարոն Մ. Ա. Գրագէտին բոլոր ան ըսածներուն նայելով թէ Ամերիգացիները ուրիշ Բողոքականաց Եկեղեցիներէ մերժուած են։

Երկրորդ, Անգղիայի մէջ Ընկերութիւն մը կայ որ "Տաճկաստանի Քարոզչութիւններու օգնող Ընկերութիւն կըսուի, որուն հաստատուելուն յատուկ նպատակը ան էր որ դրամական օգնութիւն ընէ Տաճկաստանի Ամերիգացի Միսիօնարներուն ձեռք զարկած գործին, և ան Ընկերութիւնը կազմող անդամներուն մեծ մասը Անգղիայի Եպիսկոպոսական Եկեղեցիին կը վերաբերին։ Ասոնցմէ աւելի ալ ի՞նչ զօրաւոր ապացոյց կրնայ ըլլալ Պարոն Մ. Ա. Գրագէտին ըսածներուն անճշդութեանը թէ Ամերիգացիները մերժուած են Անգղիական Եպիսկոպոսականներէն։

Բանին էութիւնը աս է որ թէև Բողոքականներուն մէջ տարբերութիւններ կան, ինչոր որ Հայ՝ Յոյն՝ Պապական Քրիստոնեաներուն մէջ ալ, սակայն բոլոր Աւետարանական ճշմարիտ Բողոքականացները համաձայն են աս կէտին մէջ որ Աստուածաշունչը կ'ընդունին իրենց մէջ ՄԻ ՄԻԱՅՆ կանոն հաւատոյ և գործոյ։

